

# ՇԵՓՈՐԱՀԱՐԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Դեռ քնած է խոր
Ամբողջ ճամբարը,
Բայց արթնացել է
Շեփորահարը:
Շեփորն է փչում
Շեփորահարը.
Աչքերն է բացում
Շաղոտ անտառը:
Երբ երկրորդ անգամ
Շեփորն է հնչում,
Զարթնում են քնից
Նապաստակ, թռչուն:
Երրորդ անգամ է
Հնչում շեփորը,
Արձագանքում են
Գետակն ու ձորը:

Իսկ չորրորդ կանչով
Շեփորահարի
Պիոներներն են, տե՛ս,
Կանգնում տողանի:
Շեփորի կանչով է
Ճամբարը քնում,
Շեփորի կանչով են
Արշավի գնում:
Շեփորի ձայնն է
Կանչում խարույկի,
Հրավիրում է
Ճաշի, ընթրիքի:
Կանչում է դեպի
Անտառ հովասուն
Շեփորի կանչը՝
Ճամբարի լեզուն:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՊԱՏԻԺ՝ ՉՍՈՎՈՐԱԾ ԴԱՍԵՐԻ ՀԱՄԱՐ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Աշխատանքից հետո երկու մտերիմ ընկեր վերադառնում էին տուն: Ընկերները պաշտոնյա մարդիկ էին, մեքենայով էին վերադառնում, նստել էին ետնատեղին, երրորդ մարդու ներկայությունը չէին զգում, կարծես մեքենան ինքն իրեն էր գնում: Խոսում էին նեղ, անձնական կյանքի, կնոջ, երեխաների, ընտանեկան հոգսերի մասին, դատողություններ էին անում: Ընկերներից մեկը գանգատվում էր, թե աշխատանքից հետո հանգիստ չունի, փոքրին պետք է զբաղեցնի, որովհետև չար երեխա է, կնոջը խանգարում է. մեծին պիտի դաս սովորեցնի, այս մեծն էլ ծույլ երեխա է, եթե չհետևես՝ առանց պարապելու կգնա դպրոց, կգա: Եթե օրագիրը չպահանջես՝ ինքը երբեք չի ներկայացնի:

«Օրագիրն ի՞նչ է»,— ընկերոջը լսելով՝ մտածում էր Պոոշը:

— Իսկ կինս իրավունք ունի՞ հանգստի, թե՞ ոչ: Անշուշտ ունի: Նա էլ ինձ նման մի մարդ է, ցերեկն աշխատում է խեղճը, երեկոյան էլ տան գործերով է զբաղվում: Ես էլ կնոջս հոգսերը թեթևացնելու համար՝ երեխաների դաստիարակությունն եմ ինձ վրա վերցրել:

«Ի՞նչ բան է երեխաների դաստիարակությունը,— ինքն իրեն հարցրեց Պոոշը,— ինչպե՞ս են երեխաների դաստիարակությունն իրենց վրա վերցնում»:

Չէր հիշում, թե վերջին անգամ որդին երբ է դիմել իրեն՝ դասերին վերաբերվող որևէ հարցով: Հիմա որ դասարանում է Ռուբենիկը, վե՞ց, յո՞թ, ո՞ւթ:

Այդ ժամանակ ընկերն ասաց.

— Այո՛, ես երջանիկ հայր եմ:

«Իսկ ե՞ս: Ինչպե՞ս է հայրն իմանում՝ երջանի՞կ է, թե՞ ոչ,— մտածում էր Պոոշը, մինչդեռ մեքենան մոտենում էր նրա տանը:— Կինս հանգստանալու իրավունք ունի՞, թե՞ ոչ»: Երբեք այդ հարցն ինքն իրեն չէր տվել:

— Նաև՝ երջանիկ ամուսին եմ,— ասաց ընկերը:— Այո՛, ընտանիքի կողմից ես բախտավոր մարդ եմ:

«Ընտանիքի կողմից... և այլն... Իսկ ե՞ս»:

Մեքենան կանգնեց, Պոոշը հրաժեշտ տվեց, իջավ: Աստիճաններով բարձրանում էր ու մտածում. «Այս աստիճաններով հազար անգամ իջել եմ ու բարձրացել: Վերևում իմ բնակարանն է, կինս, Ռուբենիկը, հեռուստացույցը, դասագրքեր, ընդունիչ, մագնիտաֆոն, խոհանոց, բաղնիք, սառնարան... Ինչպե՞ս իմանալ, երջանի՞կ եմ, թե՞ ոչ... Երջանիկ հայր, երջանիկ ամուսին, երջանիկ հիմնարկության ղեկավար...»:

Ընթրիքից հետո նա, իբր պատահաբար, մոտեցավ որդու գրասեղանին, տնտղեց դասագրքերը. բոլորի վրա գրված էր՝ յոթերորդ դասարան: Այո, ուրեմն, Ռուբենիկը յոթերորդ դասարանում է:

Կինը սուրճ բերեց: Պոոշը վերցրեց բաժակը, նայեց կնոջ աչքերին, աշխատելով կռահել՝ արդյոք ին՞քը երջանի՛կ ամուսին է, թե՞ ոչ: Կինը ժպտաց: «Երևի՝ երջանիկ... եմ»,— ինքն իրեն ասաց Պոոշը: Բաց դռներից երևում էր Ռուբենիկի սենյակը. Ռուբենիկը պարապում էր: Համեստ, խելոք, մազերը սանրած: Ինչքան էլ ուղիղ է նստում: «Ողնաշարը չի ծռվի»,— մտածեց հայրը:

— Ռուբենի՛կ,— ձայն տվեց նա,— օրագիրդ ինչո՞ւ ցույց չես տալիս, Ռուբենի՛կ ջան:

Երեխան ահագին զարմացավ: Վազելով բերեց և ցույց տվեց: Նախ, Պոոշը հասկացավ, թե օրագիրն ինչ բան է. դա աշակերտի առաջադիմության գնահատականներով մի տետր է, որն ամեն շաբաթվա վերջում ծնողները ստուգում և ստորագրում էին: Վերջում գրված էր. «Ծնող» և «Ստորագրություն»: Բոլոր տեղերում Նանարի՝ կնոջ ստորագրություններն էր:

— Ռուբենի՛կ ջան,— ասաց հայրը,— մի՞թե դու անհասկանալի կամ դժվար հարցեր չունես, ինչո՞ւ ոչ մի անգամ ինձ չես դիմում:

Որդին էլ ավելի զարմացավ, ասաց.

— Մի՞թե կարելի է, հայրի՛կ:

— Ես ինչքան էլ չլինի՝ ինստիտուտ եմ ավարտել, կաշխատեմ քեզ օգնել: Մայրիկին այլևս մի՛ անհանգստացրու, նա էլ ունի հանգստի իրավունք:

Ռուբենիկի հեռանալուց հետո, մտածեց. «Եթե չես գիտակցում երջանիկ հայր ես, թե ոչ, ուրեմն հայր չես առհասարակ»: Այդ ժամանակ որդին ետ եկավ ու ասաց.

— Հայրի՛կ, քարտեզի վրա չեմ կարողանում գտնել Ասեղի հրվանդանը:

— Բե՛ր քարտեզը:

«Ասեղի հրվանդա՞ն: Մի՞թե այդպիսի բան էլ կա»: Երկար նայեցին աշակերտական քարտեզը, տնտղեցին հինգ աշխարհամասերն էլ, մանրակրկիտորեն ընթերցեցին համարյա բոլոր գրառումները: Ասեղի հրվանդանը չկար: Երկու ժամ չարչարվելուց հետո Ռուբենիկը գնաց խոհանոց և մի րոպե չանցած վերադարձավ ծիծաղելով:

— Ահա՛ Ասեղի հրվանդանը, Աֆրիկայի ծայրագույն հարավում։

«Անիծվա՛ծ Ասեղի հրվանդան, ահա դու որտե՞ղ ես,— ասաց Պողոսը։— Զզվելի՛ հրվանդան, գլուխս արդեն պտտվում է, անիծվե՛ս դու, երանի ծովի հատակն անցնեիր»։

Ննջասենյակում, քնելուց առաջ, կնոջը հարցրեց.

— Դու ինչպե՞ս գտար այդ ասեղը։

— Ի՞նչ ասեղ։

— Այդ... դե այդ հրվանդանը։

— Դպրոցից եմ հիշում,— ասաց Նանարը։— Մի՞թե կարելի է մոռանալ Ասեղի հրվանդանը կամ Դարդանելի նեղուցը։ Ո՛չ, անհնար է։ Իսկ Բաբ-էլ-Մանդեբի նեղո՞ւցը,— Նանարի դեմքը երազկոտ արտահայտություն էր ընդունել,— Հինդուկուշի լեռները, Մադագասկար կղզին...

Անկողնում պառկած Պողոսը մտածում էր այդ զարմանալի անունների մասին։ Չէր կարողանում հիշել, իրենք էլ անցել են դրանք դպրոցում, թե՞... «Բաբ-էլ-Մանդեբի նեղուց»,— քթի տակ մրթմրթաց նա, շրջվեց մյուս կողմ ու քնեց։

Երազում նա տեսավ իրեն յոթերորդ դասարանում. իրենց դասարանը, գրատախտակը, աշխարհի կիսագնդերի քարտեզը պատից կախ, ուսուցչական սեղանը ծաղկամանով (առանց ծաղկի)։ Աշակերտական ընկերները բոլորն էլ այն նույն տարիքին էին, միայն ինքն էր մեծ, այս տարիքին։ Ներս մտավ աշխարհագրության դասատուն՝ ընկեր Գայանե Ասատրյանը։ Բարևեց, նստեց, բացեց մատյանը, կարդաց ազգանունները, ներկա-բացակա արեց։ Պողոսի սիրտը տրոփում էր։ Ուսուցչուհին բարեհամբույր կին էր, բայց երբ դաս էր հարցնում՝ հայացքը դառնում էր սառը, ծանր, վախազդու։ Նա թեթևակի գլխով արեց։ Դա նշանակում էր՝ Պողոս, անցիր գրատախտակի մոտ։

— Պողո՛ս,— ասաց նա,— ցո՛ւյց տուր Ասեղի հրվանդանը։

Պողոսը մոտեցավ քարտեզին։ Նույն քարտեզը։ Քիթը մոտեցրեց, սկսեց կարդալ ծովածոցերի, նեղուցների, հրվանդանների անունները։ Ասեղի հրվանդանը չկար։

— Դե՛, Պողո՛ս,— ասաց Ասատրյանը,— շա՛տ ես փնտրում։

— Հիմա՛, հիմա՛,— ասաց Պողոսը։— Մի քիչ շփոթում եմ, բայց կգտնեմ։ Ընդամենը մի ժամ առաջ կինս որդուս ցույց տվեց, ինքս կարդացի իմ աչքով։

— Ի՞նչ կին։

— Իմ կինը, ընկե՛ր Ասատրյան, Նանարը։

— Պողո՛ս,— խիստ ասաց Ասատրյանը,— հիմարություններ դուրս չտաս։ Պահիր քեզ աշակերտի՛ն վայել ձևով։

— Աչքի՛ս վրա, ընկե՛ր Ասատրյան, կպահեմ ինձ աշակերտին վայել ձևով, խնդրեմ։ Հիմա կգտնեմ այդ անիծված ասեղը։ Այս ի՜նչ ցավի մեջ ընկա։ Ահա ինչ է նշանակում՝ երջանիկ հայրություն։

Դասարանը հռհռաց։

— Պողո՛ս,— նորից խիստ ձայնով ասաց ուսուցչուհին,— կապիկություններ չանես։

— Չեմ անի, ընկե՛ր Ասատրյան, մի՞թե իմ տարիքում վայել է կապիկություններ անելը։ Ես հիմա կգտնեմ այդ անիծված հրվանդանը, թույլ տվեք միայն ակնոցս վերցնել։

Դասարանը կրկին հռհռաց։

— Ակնո՞ց... Այդ ե՞րբ դու կարճատես դարձար։

— Է՜հ, ընկե՛ր Ասատրյան, մարդ որ քառասունն անցնում է՝ կարճատես էլ է դառնում, առողջությունն էլ առաջվա առողջությունը չի մնում...

— Պողո՛ս,— ձայնը բարձրացրեց ուսուցչուհին,— քեզ զգուշացրի, որ կապիկություններ չանես։ Այդ փողոցային կատակները դու որտեղի՞ց ես սովորել։

«Մի՞թե նա չի տեսնում, որ ես տարիքն առած մարդ եմ,— երազի մեջ տանջվում էր նախկին աշակերտը։— Գոնե բեղերս նկատեր»։

— Ախար, ընկե՛ր Ասատրյան, ես ամուսնացած, կին, երեխայի տեր մարդ եմ։ Իսկ դուք ինձ հարցնում եք՝ Ասեղի հրվանդան, Մկնասեղի հրվանդան...



Աստրյանը մոտ քաշեց մատյանը:

— «Վատ»,— ասաց նա:— Ծնողիդ կկանչես, բավակա՛ն է:

— Վա՜յ, չնշանակե՜ք, ընկե՛ր Աստրյան,— աղերսեց Պոռշը,— ողջ հիմնարկում կխայտառակվեմ:

Դասարանը էլ ավելի բարձր ծիծաղեց:

— Գրատախտակի մոտ կանգնած էլ կմնաս,— ասաց ուսուցչուհին:— Սուր՛իկ, դո՛ւ արի ցույց տուր:

Ճիշտ է, լոթում Սուրիկ անունով մի զզվելի տղա կար, գերազանցիկ: Լարած տիկնիկի նման միշտ ձեռքը տնկած էր պահում, հենց անունը լսում էր թե չէ՝ պոկվում էր տեղից, ակնթարթաբար մոտենում քարտեզին և ցույց տալիս ամենակորած-մոլորած կղզին: Հիմա այդ նույն Սուրիկը Սուրեն է դառել, լվացքի մեքենաներ է նորոգում:

— Ընկե՛ր Աստրյան,— կմկմաց Պոռշը,— թո՛ւյլ տվեք նստել: Առավոտյան գործի եմ, յոթն անց կեսին, մեղք եմ, գոնե մի կես ժամ հանգստանամ:

— Ո՛չ,— ասաց ուսուցչուհին:

Եվ Պոռշը մինչև զարթուցիչի ձայնը մնաց գրատախտակի մոտ կանգնած, մի ոտից մյուսին հենվելով: Երբ արթնացավ՝ մարմինը հոգնածությունից ջարդվում էր, թվում էր՝ մի րոպե անգամ չի քնել: Ճակատն էլ քրտնած էր: Նայեց պատին. ոչ մի կիսագնդերի քարտեզ, ոչ մի գրատախտակ: «Ահա ինչ է նշանակում ժամանակին դասը չսովորել: Քանի՜ տարի է անցել, նորից դաս են հարցնում, վարվում ինչպես մի փոքրիկ աշակերտի հետ, պատիժ կանգնեցնում, այնպես, որ քիչ է մնում աշխատանքից ուշանաս, հիմնարկության գործը տապալվի»:

— Նանա՜ր,— կանչեց նա կնոջը:— Նանա՛ր ջան, խնդրեմ, բե՛ր քարտեզը և ցո՛ւյց տուր Ասեղի հրվանդանը:

— Ինչի՞դ է պետք, Պո՛ռշ:

— Երևի պետք է, անհրաժեշտ է, որ մարդ իմանա այդ հրվանդանի տեղը: Այլապես դպրոցում ինչո՞ւ են սովորեցնում:

Նանարը բերեց քարտեզը, ցույց տվեց:

— Այո՜, այո՜,— ասաց Պոռշը,— ո՜նց էի մոռացել: Ա՜խ, ա՜խ, ահա թե ինչ է նշանակում՝ երջանիկ ամուսին:

— Ի՞նչ:

— Ոչի՜նչ, ոչի՜նչ, Նանա՛ր ջան: Մոռացա ասել՝ բարի լո՛ւյս:

Հիմնարկության ելքի-մուտքի արձանագրությունները ստորագրելիս, Պոռշը գլխավոր հաշվապահին հարցրեց.

— Գալո՛ւստ Արտեմիչ, այս ամենը լավ է, այս ամենը ես սիրով ստորագրեցի: Իսկ դուք գիտե՞ք որտեղ է գտնվում Ասեղի հրվանդանը:

Գալուստ Արտեմիչը, թոշակի անցնելու մոտ մի մարդ, հարգանքով ակնոցը դրեց քթին, նայեց շուրջը, ապա ցածրաձայն ասաց.

— Իսկ ինչո՞ւ: Մի՞թե պետք է ակտավորել:

— Ո՛չ, սիրելի՛ Գալուստ Արտեմիչ: Բայց դուք դպրոցում սովորել եք, ինստիտուտ եք ավարտել: Ինչո՞ւ են ձեզ սովորեցրել:



— Հասկացա,— ասաց հաշվապահը,— երեկոյան աչքի կանցկացնեմ:

Այդ օրն այդպես անցավ: Երեկոյան Պոռշը սուրճըն ըմպելիս՝ դարձյալ աչքն ընկավ իր սենյակում պարապող որդու վրա:

— Նանա՛ր, դուռը փակի՛ր, խնդրեմ: Մենք երեվի, Ռուբենիկին խանգարում ենք,— ասաց նա:

«Ի՜նչ հիմար երազ էր,— ինքն իրեն ասաց Պոռշը,— ի՜նչ ծիծաղելի երազ էր: Այ քեզ փորձա՜նք»: Երբ պառկեց անկողնում, աչքերը փակել՝ չէր փակել, ընկեր Աստրյանը եկավ ու տնկվեց առաջը.

— Հը՞, Պո՛ռշ, դասդ սովորեցի՞ր:

«Կորա՜նք»,— ինքն իրեն ասաց Պոռշը, հազիվ ոտքերը քարշ տալով գնաց գրատախտակի մոտ:

— Հապա ցո՛ւյց տուր Ասեղի հրվանդանը:

Պոռշը նայեց քարտեզին, վստահ ձեռքն առավ ցուցափայտը, բայց այդ ժամանակ մեկը վազելով եկավ, մատով ցույց տվեց ու փախավ. Գալուստ Արտեմիչն էր: Պոռշը իր գլխավոր հաշվապահից այդ բանը բոլորովին չէր սպասում: «Լա՜վ,— ասաց ինքն իրեն,— ես քեզ թոշակի կուղարկեմ, որ իմանաս, մյուս անգամ պետիդ քթի տակից Ասեղի հրվանդանը չթռցնես»:

— Ասեղի հրվանդանը պետք չէ, արդեն ցույց տվին: Դու ավելի լավ է մեզ ցույց տուր Բաբ-էլ-Մանդեբի նեղուցը:

— Ընկե՛ր Աստրյան,— բողոքեց Պոռշը,— դուք էլ ինչքան դժվար հարց կա, ինձ եք տալիս:

— Չես պատասխանի, այդպես էլ կմնաս գրատախտակի մոտ, որ իմանաս՝ ինչ է նշանակում դասը չպատրաստած դպրոց գալը։

— Հիմնարկության ողջ գործն ինձ է սպասում, այդպես ո՞նց կլինի։ Վաղը պետք է երկրորդ բաժինը գույքագրել, իսկ ժամը չորսին տրեստի պետի մոտ եմ հրավիրված, խորհրդակցության։

Դասարանը ուրախ քրքջում էր։

— Ինչո՞ւ եք ծիծաղում,— բարկացավ Պողը,— ձեր պատճառով ինձ են պատժում։ Ես ծիծաղելի ոչինչ չասացի, ես գործի մարդ եմ, իսկ դուք դեռ երեխաներ եք...

Մի կերպ լռեցրեց, գնաց աշխատանքի, իսկույն կանչեց Գալուստ Արտեմիչին։ Չոր պատասխանեց նրա բարի լույսին։

— Ասեղի հովանդանը գտնվում է Հարավային Աֆրիկայում,— ասաց հաշվապահը։

— Գիտեմ,— չոր ասաց Պողը,— դու ավելի լավ է ասես՝ որտե՞ղ է գտնվում Բաբ-էլ-Մանդեբի նեղուցը։

— Մեր հին ակտերում...

— Ի՞նչ հին ակտեր։

— Մեր հին ակտերում, կարծեմ, այդպիսի բան հանդիպել եմ։ Բաբ-էլ-Մանդեբի նեղուցի վրա կամուրջ...

— Ի՞նչ կամուրջ...

— Մենք կարծեմ, չորրորդ շինտրեստի և մոնտաժման երկրորդ գրասենյակի հետ երկարաժամկետ պայմանագրով... կարծեմ... ձեր ասած Բաբ-էլ-Մանդեբի նեղուցի վրա, կարծեմ, թե հիշողությունս չի դավաճանում...

«Մի՞թե այդպիսի բան ենք արել,— մտքում խորհեց պետը,— այդ անիծված նեղուցի վրա մի՞թե մենք օբյեկտ ունենք»։

— Լավ, ազատ եք,— ասաց պետը։— Միայն իմացե՛ք, երբ ձեզ դաս չեն հարցնում, մի՛ վազեք և մատներդ խոթեք այնտեղ, որտեղ ձեզ չեն խնդրում։

— Դա՞ս։ Ի՞նչ դաս։

— Ինչքա՞ն վատ եք սովորել դպրոցում։ Հենց հիմա բերեք Բաբ-էլ-Մանդեբի նեղուցին վերաբերվող գործերը։

Մի ժամ անց, գլխավոր հաշվապահը եկավ, գլանաձև փաթաթած քարտեզը թևի տակ։

— Երևի կրոսվո՞րդ եք վճռում, հա՞,— պատկառանքով հարցրեց նա։

Պողն արդեն գիտեր գիշերն իրեն ինչ է սպասում, քնելուց առաջ նստեց, բացեց աշխարհագրության դասագիրքը, մի երկու ժամ պարապեց։ Երազում դասը կրկնվեց և նա ոչ միայն ցույց տվեց պահանջված նեղուցներն ու ծովածոցերը, այլև պատմեց Չիլիի բնակլիմայական պայմանների մասին։ Բայց մուսոնների ու պասսատների հարցում խրվեց մնաց մինչև լուսաբաց։

Առավոտյան տնքալով հագավ շորերը։

— Ա՜խ,— ասաց նա,— մուսոններ, պասսատներ...— Որդուն զգուշացրեց.— Տե՛ս, ժամանակին դասերդ չսովորես, իմ օրը կընկնես։ Սովորի՛ր բոլորը, ոչ մի դաս բաց մի՛ թողնի, սովորի՛ր մուսոններն ու պասսատները, երկրի մագնիսականությունը։ Մի օր չսովորած դասերի համար կյանքը քեզ հաշիվ կներկայացնի։ Մի օր քեզնից կպահանջեն։

— Ո՞վ կպահանջի։

— Ո՞վ։ Քո ուսուցիչը, թեկուզ երազում, կգա ու կասի. «Ես ամբողջ կյանքս քեզ եմ նվիրել, քեզ ուսում ու գիտելիքներ եմ տվել, իսկ դու, ծույլ երեխա, ոչինչ չսովորեցիր։ Թող բոլորը հանգիստ քնեն իրենց անկողիններում, իսկ դու մինչև լուսաբաց կտանջվես գրատախտակի մոտ»։ Տեսնում ես, չէ՞, իմ օրը։ Մուսոններից ու պասսատներից եղավ։

— Մի՞թե լուսամուտը բաց է եղել ու քամի է փչել։

«Ա՜ա,— հիշեց հայրը,— մուսոնները և պասսատները քամիների անուններ են»։

— Այո՛, այո՛,— ասաց նա,— ամբողջ գիշեր փչում էին, մեջքս լրիվ փայտացել է։ Ո՞ւր է քո դասագիրքը, տո՛ւր հետս տանեմ, որ մյուս անգամ այսպիսի բան չպատահի։ Աշխարհագրության դասագիրքը։

— Ինչի՞դ է պետք, հայրի՛կ։

— Որոշ դասեր, ինչ թաքցնեմ, չեմ սովորել ժամանակին, խիղճս տանջում է։

Մի ամիս անց, Պողը աշխարհագրությունը գիտեր հինգ մատի պես։ Նա թեթև սրտով մտնում էր անկողին և, հենց որ երևում էր ուսուցչուհին, բաց դեմքով էր դիմավորում նրան։ Մի անգամ, երբ կամովին ձեռք բարձրացրեց դասը պատմելու՝ ամեն ինչ չքացավ, անհետացավ ընդմիշտ, և այդ օրվանից նա այլևս քնում էր հանգիստ, անխռով քնով։ Հիմա նա, կարելի էր ասել, աշխարհագրությունը գիտեր անգիր, Սուրիկի պես։

Բայց պատահական մի առիթով դարձյալ թունավորեց կյանքը։ Նանարը տանը չէր, Ռուբենիկը հորը հարցրեց, թե ինչպես է գրվում «խորդուբորդ» բառը։ Պողը, իհարկե, չգիտեր։ Կինը եկավ, պատասխանեց։

Մթնեց, պառկեցին քնելու։ Աչքերը դեռ չէր փակել՝ մայրենի լեզվի ուսուցիչ Առաքել Առաքելյանը ներս մտավ դասարան, ասաց.

— Պո՛ղ, արի՛ ու գրատախտակին գրիր «խորդուբորդ» բառը։

Սկսվեցին տանջանքները։ Դասընկերները նրա ամեն խոսքից հռհռում էին։

— Եթե ինձ այս վիճակում իմ աշխատակիցները տեսնեն՝ ի՜նչ կմտածեն։ Վաղը ես պետք է օբյեկտները ստուգեմ, վաղը ես հազար ու մի գործ ունեմ, վիճակն առանց այն էլ հարթ չէ, հիմա էլ կպել եք «խորթուբորթից»։

Աշակերտները ծիծաղից թուլացել, նստարանի տակ էին ընկնում։ Դասարանում անասելի ժխոր էր։

— Պո՛ղ, անկարգություններ մի՛ արա, գրի՛ր գրատախտակին «խորդուբորդ»։

Պողը գրեց «Խորթուբորթ»։

— Սխալ է,— ասաց ուսուցիչը։

— Ինչո՞ւ է սղալ։

— Ոչ թե՝ սղալ, այլ՝ սխալ։ Ճիշտ սխալ ասա։

— Ես ո՞նց ճիշդ սղալ ասեմ, ընկեր Առաքելյան։ Երկուսը միասի՞ն։

— Ոչ թե՝ ճիշդ, այլ՝ ճիշտ։ Ճիշդը նույնպես սխալ է։

— Այդ ո՞նց է, ընկե՛ր Առաքելյան, որ ճիշդ բանը նույնպես սղալ է։

— Ճիշտ է սխալը և սխալ է՝ ճիշդը:

— Զարմանալի է,— իրոք զարմացել էր Պոռշը,— ճիշդն էլ է սղալ, մղալն էլ է սղալ: Ինչ ասում եմ՝ սղալ է:

— Այո՛: Ասա՝ ճիշտ է, ասա՝ սխալ:

Դասարանը ծիծաղից թնդում էր:

— Հասկացի՛ր, Պոռ՛շ, բառը սխալ ես արտասանում, բա՞ռը:

— Ես բառը ճիշդ եմ արտասանում, ընկե՛ր Առաքելյան:

— Հիմա էլ՝ սխալ ես ճիշտ ասում:

— Ո՛չ, ես սխալ չեմ ճիշդ ասում:

— Ա՛յ, իսկ հիմա ճիշտ ես սխալ ասում:

— Ճիշդ եմ ասում, ասում եք՝ սղալ է: Սղալ եմ ասում՝ ասում եք՝ ճիշդ է: Սղալը ճիշդ ո՞նց կլինի:

— Երկուսն էլ սխալ է,— հուսահատ գոռում էր Առաքելյանը:— Ա՜խ, գլուխս պտտվեց: Պոռ՛շ: Անգրագետ, ծույլ, ապաշնո՛րհ երեխա: Խոսքը դ և ղ տառերի մասին է:

— Ես ճշմարտախոս մարդ եմ, ընկե՛ր Առաքելյան, ես երբեք սղալ չեմ ասում:

— Հենց հիմա դու սխալ ես սխալ ասում:

— Լավ, ես իմ սխալը ընդունում եմ: Միայն խնդրում եմ՝ պատիժ չկանգնեցնեք: Հիմնարկության գործը տապալելու համար ինձ դատի կտան:

— Ես զարմանում եմ, թե ինչպես ես այդ գրագիտությամբ դու հիմնարկություն ղեկավարում: Բա ինչպե՞ս ես դու գրում՝ խորդուբորդ, ճիշտ, սխալ:

— Մեր հիմնարկությունում բոլորն աշխատող մարդիկ են, խորթուբորթություն չկա: Ճիշդ ու սղալ էլ որ պատահում է՝ տեղակալ ունեմ, նա է դրա համար պատասխանատու:

Այնուամենայնիվ ուսուցիչը նրան թույլ չտվեց նստել: Առավոտյան գլուխը կապարի պես ծանր էր, ոտքերը ցավում էին, թվում էր՝ իրոք ողջ գիշերը կանգնած է անցկացրել: Հաջորդ գիշեր մայրենի լեզվի դասը կրկնվեց և այնքան շարունակվեց, մինչև Պոռշը ի վերջո սովորեց գրագետ գրել:

Ապա հերթը հասավ գրականությանը, պատմությանը, հանրահաշվին, ֆիզիկային, օտար լեզվին: Ստիպված սովորեց բոլոր չսովորած դասերը, մի տեսակ ասես գիշերային դպրոց էր հաճախում: Զեկուցումների ժամանակ երբեմն պատմությունից ուսանելի մեջբերումներ էր անում, քաղվածքներ էր արտասանում, անգլերեն առակներ էր ասում՝ շարժելով գործընկերների պատկառանքը: Ինքն էլ էր զարմացած. «Այսքան գիտելիք միայն դպրոցից ...Ըստ էության, որքա՜ն բազմազան են մեր հարազատ դպրոցի տված գիտելիքները»: Նրա զարգացումն ու գիտելիքները աննկատ չմնացին, պաշտոնի բարձրացում եղավ: Այս նոր պաշտոնում մի այլ մտերիմ ընկերոջ հետ մեքենայով վերադառնում էր տուն: Աննկաշկանդ ընկերական զրույց էր.

— Բոլոր երջանիկ հայրերը նման են իրար, ամեն դժբախտ հայր՝ դժբախտ է յուրովի,— խոսում էր Պոռշը:— Սա «Աննա Կարենինայից» մի դարձվածք է, քիչ այլափոխած,— ավելացրեց նա՝ սաստիկ շարժելով ընկերոջ պատկառանքը:— Կարդացեք Լև Տոլստոյի այդ գիրքը:

Տան աստիճաններով բարձրանալիս Պոռշը մտածում էր, որ իրոք՝ երջանիկ հայր է, երջանիկ ամուսին, երջանիկ տրեստների կառավարիչ: Երբ դուռը բացեց, կինը ներսից ձայն տվեց.

— Պոռ՛շ, մեր Ռուբենիկը ընդունվեց ինստիտուտ: Այսօր վերջին քննությունից «հինգ» ստացավ:

Պոռշը վատ զգաց: Թվաց՝ ինքն էր, նորից ընդունվեց ինստիտուտ:

— Դու ուրախ չե՞ս,— զարմացավ Նանարը:

— Ուրախ եմ,— մռայլ ասաց Պոռշը, ծանր նախազգացումով:— Դպրոցը մի կերպ նորից ավարտեցի, հիմա էլ ինստիտուտի չսովորած դասերը պիտի հոգիս հանեն... Հի՜նգ տարի անքնություն:

Հենց այդ գիշեր Պոռշը երազում գրատախտակի մոտ մինչև լույս, պաղ քրտինքը ճակատին, «Նյութերի դիմադրություն» առարկայից խնդիր էր լուծում:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ





# ԲԱԼԼԱԴ ԾԱՂԿԱՁՈՐԻ, ԱՂՋԿԱ ԵՎ ՆԿԱՐԻ ՄԱՍԻՆ

ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Հանդիպեցի մի օր նրան
Ծաղկաձորում կանաչ,
Չորս կողմ ծառեր ու թփուտներ,
Չորս կողմ կանա՜չ, կանա՜չ:

Փոքր ինչ հեռու պիոներական
Վրանների շարքեր,
Դեմը նրա՝ փոքրիկ կտավ,
Վրձիններ ու ներկեր:

Նկարում էր աղջիկը լուռ,
Նստած կանաչ քարին,
Ծունչս պահած ես մոտեցա,
Նայեցի նկարին:

Շատ զարմացա... Նա անտառը
Կապույտով էր ներկել,
Կապույտ էին ծաղիկները,
Կապույտ էին հերկեր:

Ու կապուտակ մշուշի մեջ
Ժախրում էր մի արտույտ,
Եվ նրագի նման հեռու
Թռչունն էլ էր կապո՜ւյտ:

Ինչո՞ւ կապույտ, կապույտ միայն,
Ուրիշ գույներ չկա՞ն...
Ու ավելի ես մոտեցա
Նկարիչ աղջկան:

Հանկարծ շրջեց նա գլուխը
Եվ ինձ նայեց շիտակ,
Պատասխանը այդ իմ հարցի
Աչքերում էր հստակ:

Ու հասկացա ես աղջկան.
Երազները նրա
Թռվել էին կապո՜ւյտ, կապո՜ւյտ
Այս կտավի վրա...

Նկ. ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

Ահա, թե մի անգամ ինչ պատմեց երեխաներին ծեր նավաստի Մակարը:

— Մենք վերադառնում էինք Անտարկտիդա կատարած նավարկությունից: Անտարկտիդան շատ հեռու է: Այնտեղ կլոր տարին ձյուն ու ցուրտ է, և ծովը միայն ամռան ամիսներին է ազատվում սառույցից:

Այդ օրը ծովը խաղաղ էր, երկինքը՝ կապույտ: Նավաստիները տախտակամածի վրա հավաքված՝ տաքանում էին արևի տակ և զրուցում էին:

Հանկարծ վերևից դիտող նավաստին բղավում է.

— Տղանե՜ր, հապա նայե՛ք, այն ի՞նչ է լողում նավի ետևից:

Մենք վազեցինք նավի ետնամասը և ի՞նչ տեսանք. գլուխը ջրից բարձր. պահած, նավի ետևից ամբողջ ուժով լողում է մի փոքրիկ ծովառյուծ:

Այդպիսի բան մենք չէինք տեսել: Առհասարակ ծովառյուծները շատ զգույշ կենդանիներ են և սովորաբար աշխատում են նավերից որքան կարելի է հեռու մնալ:

Իսկ դիտող նավաստին վերևից բղավում է.

— Հապա տեսե՜ք, տղանե՛ր, շնաձո՜ւկը...

Իսկապես, փոքրիկ ծովառյուծից մի քանի մետր այն կողմ մենք տեսանք շնաձկան դունչը: Շնաձուկը լողում էր ամբողջ զորությամբ և ջանում էր հասնել փոքրիկ ծովառյուծի ետևից: Մենք ամեն ինչ հասկացանք: Փոքրիկ ծովառյուծը փախչում էր վտանգավոր գիշատչի սուր ատամներից: Լողալով, գլուխը ջրից դուրս պարզած, նա երբեմն վեր-վեր էր ոստնում, կարծես, ցանկանալով հասնել նավեզրին և փրկություն գտնել:

— Դե՛, չե՞ք տեսնում, որ նա փրկությո՜ւն է որոնում,— բղավում եմ ես:— Էլ ի՞նչ եք կանգնել...

Վազեցին տղաները, արագ-արագ քանդեցին փրկարար նավակի կապերը, մենք երեք հոգով ցատկեցինք նրա մեջ, և նավակը արագ ծով իջեցրինք:

Փոքրիկ ծովառյուծը մեզ տեսնելով, կարծես նոր ուժ ստացավ: Լողաց, հասավ մեզ, նավակին բոլորովին ընդհուպ, և տեսնում ենք՝ ուզում է ցատկել նավակի մեջ: Մենք ուղղակի ձեռքով ջրի միջից վերցրինք նրան, իսկ նա մեզանից նույնիսկ չի էլ վախենում, ենթարկվում է:

Շնաձուկը տեսնելով մեզ, ետ ընկավ և, քիչ հետո, տես ադությունից կորավ:

Մեզ նավակով բարձրացրին տախտակամած: Եվ այստեղ մենք նկատեցինք, որ փոքրիկ ծովառյուծը համարյա շարժվել չի կարողանում: Փախչելով շնաձկան հետապնդումից փոքրիկ ծովառյուծը սպառել էր վերջին ուժերը և հիմա պառկած էր աչքերը խուփ, կարծես անկենդան:

Մենք փորձեցինք նրան կերակրել համեղ ձկով:

# ՓՈՔՐԻԿ ԾՈՎԱՌՅՈՒԾԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Բայց իզուր: Նա նույնիսկ աչքերը չէր բացում:

Ապա եկավ նավի բժիշկը, զննեց փոքրիկ ծովառյուծին և ասաց.

— Բոլորովին հալից ընկել է: Նրան հատուկ խնամք է հարկավոր:

Փոքրիկ ծովառյուծին տեղավորեցինք ջրով լի տաշտի մեջ: Բոլոր նավաստիները հոգ էին տանում նրան: Բժիշկը ամեն օր նրան սրսկում էր վիտամիններ և ուրիշ կազդուրիչ դեղեր: Նավի խոհարարը ամենահամեղ պատառները փոքրիկ ծովառյուծի համար էր պահում:

Կարճ ժամանակ հետո փոքրիկ ծովառյուծը լրիվ կազդուրվեց: Եվ մենք որոշեցինք, որ արդեն ժամանակն է նրան ծով բաց թողնել:

Մի արևոտ օր էր: Մակույկով իջեցրինք նրան ծով և բաց թողեցինք ջրի մեջ: Նա որոշ տեղ լողաց մեր ետևից և ապա ետ մնաց:

Մենք բարձրացանք տախտակամած:

Իսկ քիչ հետո հերթապահ նավաստին վերևից բղավում է.

— Փոքրիկ ծովառյուծը լողում է նավի ետևից...

Մենք նայում ենք վար. և իսկապես, փոքրիկ ծովառյուծը ամբողջ ուժով լողում է նավի ետևից և չի էլ ցանկանում ետ մնալ, վիզը ձգած, ցատկում է վեր, կարծես կամենալով հասկացնել, որ իրեն չթողնենք: Մենք բղավում ենք նրա վրա, հեռու ենք քշում, իսկ նա նավից ձեռ չի քաշում:

Այդ ժամանակ մեր նավապետն ասաց.

— Ի՞նչ արած, պետք է նրան վեր բարձրացնել:

Այդպես էլ արինք: Վեր բարձրացրինք փոքրիկ ծովառյուծին: Եվ նա մնաց մեզ հետ, վերադարձի ամբողջ ճանապարհին:

Նավաստիները շատ էին սիրում նրան, իսկ նա մարդկանցից չէր քաշվում, կերը ընդունում էր ուղղակի մեր ձեռքից:

Այդպես, հասանք նավահանգիստ: Իսկ այստեղ չգիտեինք նրան ի՞նչ անենք:

— Գիտե՞ք ինչ, տղանե՛ր,— ասում եմ ես,— եկեք հեռագիր տանք գազանների հայտնի վարժեցնող Դուրովին, գուցե այս փոքրիկ ծովառյուծը նրան պետք գա:

Հեռագիր տվեցինք: Եվ մի քանի օր հետո Դուրովից պատասխան հեռագիր ստացանք. «Ծովառյուծը պահեք: Շուտով կժամանի իմ ներկայացուցիչը»:

Իսկ մի քանի օր հետո եկավ Դուրովի ներկայացուցիչը, և մենք փոքրիկ ծովառյուծին հանձնեցինք նրան: Սքանչելի փոքրիկ գազան էր...



Հետո մի անգամ, արձակուրդին ես գնացի Մոսկվա: Այնտեղ հայտագրերի վրա ես կարդացի, որ կրկեսում ելույթ է ունենում գազանների հայտնի վարժեցնող Դուրովը: Ես տոմս վերցրի և գնացի կրկես: Եվ այստեղ Դուրովի վարժեցրած շատ գազանների հետ ես տեսա իմ ծանոթ փոքրիկ ծովառյուծին: Նա գույնզգույն գնդակներ էր պահում դնչի վրա, վեր էր նետում և նորից դնչով բռնում:

Ես ասում եմ կողքիս նստած մարդկանց.

— Իսկ գիտե՞ք, դա մեր փոքրիկ ծովառյուծն է:

Մարդիկ ինձ սաստում են.

— Մի՛ խանգարի, ծերո՛ւկ, թո՛ղ նայենք:

Իսկ ես ասում եմ.

— Ախր, հասկանո՞ւմ եք, շնաձուկը ընկել էր նրա ետևից, իսկ մենք նրան փրկեցինք... Եվ հիմա նա դրա փոխարեն զվարճացնում է մարդկանց...

Իսկ նրանք նորից դժգոհում են, ինձ հարբածի տեղ են դնում.

— Պետք է լռե՞ս, վերջապես, ծերո՛ւկ...

Էհ, ո՞ւմ կարող ես հասկացնել...

Եվ ծեր նավաստի Մակարը թափ տվեց ձեռքը:



# ՔԱՂՑՐ

*ԱՂԱՎՆԻ*

Թե ե՞րբ եկավ գարունը և ինչպե՞ս, չեմ կարող ասել։ Միայն այնքանն եմ զգում, որ շոգ, շատ շոգ մի գարուն է։ Այսպիսի գարուն եթե մեր գյուղում լիներ, գյուղացիները կասեին. «Տարին չորային է լինելու, վայ մեզ»։ Իսկ հիմա այդ շոգն ինձ դուր է գալիս, քանի որ ես նստած եմ հատակին, ոտքերս բոբիկ են, հատակն էլ մարմարի նման մի բան է, սառույցի չափ պաղ։

Ես չգիտեմ, թե դրսում, շոգից բացի, դարձյալ ինչ կա։ Լռություն է, մեծ մի լռություն, ու ես կարծես լսում եմ, թե ինչպես բաց պատուհաններից շոգը ներս է սողում և իջնում ինձ վրա։ Տատիկիս շալի նման փափուկ ու դուրեկան փաթաթվում է նա ինձ, ու ես մտքումս աղաչում եմ. «Շո՛գ ջան, շա՛տ արի, մի՛շտ արի, ցուրտ է, մրսո՛ւմ եմ...»։ Ուրիշ դեպքում ես կարող էի դուրս վազել ու թաթախվել շոգի մեջ, բայց հիմա դա անհնարին է։ Ինձ դրսի շոգից անջատող դուռը այնքան ծանր է ու ահռելի, որ ես ոչ մի կերպ չեմ կարողանա բացել, և հետո, ո՞ւր գնամ, ես այստեղ ոչ մի ծանոթ չունեմ, ոչ ոքի չեմ ճանաչում, և ինձ էլ ճանաչող չկա։ Ես այս շինության մեջ հայտնվել եմ՝ ինչպես հեքիաթներում թագավորի տղայի հետ է պատահում, երբ մութ աշխարհում գնում է, գնում, մեկ էլ դևերը վերցնում են նրան ու տանում իրենց թագավորի պալատը։ Բայց հեքիաթի այդ փորձանքները ամեն անգամ միայն մեկի հետ են պատահում, իսկ այս դեպքում ես մենակ չեմ, ինձ հետ ուրիշներն էլ կան։ Դրանք բոլորն ինձ նման մանր-մանրապճեղ տղա ու աղջիկ, ինձ նման քաղցած, հոգնած, վախեցած, ինձ նման նստել են պաղ հատակին, սեղմվել իրար ու երևի ինձ նման էլ մտածում են թագավորի մասին, նրա պալատի և այն մասին, թե ով է մեզ մի կտոր հաց տալու։

Հաց, միայն հաց։ Ես չեմ հիշում, թե վերջին անգամ երբ եմ հաց կերել, երբ եմ քնել իսկական անկողնում տատիկիս հետ, ծվարած նրա կողքին և ականջիս տակ նրա սրտի տկտկոցը։

Երևի վաղուց, շատ վաղուց էր դա, երբ ես տատիկ ունեի, տուն ունեինք, օրորոցում ճղավում էր իմ նորածին քույրիկը, ինձ ասում էին՝ օրորիր, իսկ ես բարձը դնում էի նրա փորին, որպեսզի վախենար ու լռեր, և ինքս վերցնելով մի ամբողջ լավաշ, վազում էի խաղալու։

Ե՞րբ էր դա... Եվ, առհասարակ, եղե՞լ էր այդպիսի մի ժամանակ, այդպիսի մի երեխա, որը պիտի որ ես լինեի։

Դժվարանում եմ ասել։ Ես ոչինչ չեմ հիշում,

բացի այն, որ մենք քայլում էինք՝ մեր ամբողջ գյուղը, քոչ ու բարխանով, տավարով-ոչխարով ճամփա ելել ու գնում էր, իսկ ինչ-որ տեղ թնդանոթներ էին կրակում: Ասում էին կռիվ է, թուրքը նեղում է, ասում էին, թուրքը կհասնի մեզ ու կկոտորի: Թո՛ւրքը, թո՛ւրքը, թո՛ւրքը...

Հարկավոր էր վազել, փախչել, հեռանալ: Տատիկը քաշում էր իմ ձեռքից, համոզում էր ինձ ու շատ անուշ բաներ էր խոստանում և ապա վախեցնում էր, որ եթե չվազեմ, թուրքը կգա ինձ կտանի:

— Թող գա ու տանի՛,— ես լացով նստեցի ճամփեզրին, ախր տոտիկիս մեկը կորել էր ու բոբիկ ոտքիս մեջ փշեր էին մտնում:— Չե՛մ գալիս, ես կմնամ էստե՛ղ...

— Բալա՛ ջան, ձա՛գ ջան...

Սա իմ տատիկի վերջին, ամենավերջին խոսքն էր, որ խառնվեց ահավոր որոտին, հող դարձավ, քար ու կոշտ, և թափվեց իմ գլխին: Երևի կործանվում էր այն բանը, որին աշխարհ էին ասում:

Չգիտեմ որքան տևեց այդ կործանումը: Արթնացա խորունկ ու զարմանալիորեն անուշ քնից: Շուրջըս նայեցի՝ առավոտ էր, ոչ ոք չկար ու ես էլ բոլորովին ուրիշ մի տեղում էի, ճամփից հեռու ցեխոտ մի փոսի մեջ:

— Տատի-ի՛կ....

— Ի՛-ի՛-ի՛...— կարծես ինչ-որ մեկը ծաղրեց ինձ, բայց ո՞վ, որտեղ էր և ինչո՞ւ չէր երևում, ախր ես մարդու երես տեսնել էի ուզում:

Վախեցա, լաց եղա և սկսեցի վազել: Վազում էի ու լալիս, լալիս ու վազում, և շատ ուշ տեսա, որ ետևիցս ձիավորներ են գալիս: Երևի թուրքեր էին, գալիս էին ինձ բռնելու: Կպա գետնին ու փակեցի աչքերս, որպեսզի չտեսնեի, թե ինչպես էին ինձ բռնելու: Իսկ ձիավորները հայերեն էին խոսում: Նրանք խոսում էին իրար հետ, ինձ ոչինչ չհարցնելով, կարծես իրենց գտածը կենդանի արարած չէր, այլ խուրջինի, կարպետի, վերմակի նման մի բան, ինչպիսիք շատ էին տրված դաշտում, հենց իմ շուրջը: Այդպես խուրջինի նման էլ ինձ գցեցին ձիու գավակն ու տարան:

Մենք մի քանի օր գնում էինք, գնում, վերջը հասանք Ջալալօղլի անունով մի տեղ: Այստեղ ինձ նման շատ երեխաներ կային ու դա որբանոց էր: Կարծես թե վատ չէր այդ որբանոց կոչվածը՝ օրական մեկ անգամ քաղցր թեյ էինք խմում ու քնում էինք ոչ թե բաց դաշտում, այլ թախտերի վրա: Բայց մի քանի օր հետո նորից ամեն ինչ խառնվեց իրար, ասացին թուրքը գալիս է, լաց ու կոծով լցվեցինք փողոց ու սկսեցինք փախչել: Փախա՜նք, փախա՜նք, մինչև որ դարձյալ ինչ-որ զինված մարդիկ հայտնվեցին, կռվով, սպառնալիքով գաղթողներից մի քանի փուրգոն խլեցին, մեզ լցրեցին մեջները ու բերին հասցրին քաղաքն Թիֆլիս, կայարանը Նավթլուղ:

Նավթլուղից մինչև այս զարմանահրաշ շինությունը մեզ ուղեկցում էին անծանոթ լեզվով խոսող մարդիկ, դրանից էլ ես հասկացա, որ ուրիշ երկիր էինք ընկել:

* * *

Մեկ, երկու, հինգ, տասը... Ես երկու ձեռքիս բոլոր մատները ծալել եմ արդեն մի քանի անգամ ու հաշիվը կորցրել: Ախր մենք այստեղ ավելի շատ ենք, քան Ջալալօղլու մեր որբանոցում, ու ես ուզում եմ հաշվել, թե քանի հոգի ենք, բայց ահա չի ստացվում:

— Լսի՛ր, իմ մատները, քո մատները, բոլորիս մատները որ ծալենք, ինչքա՞ն կլինի...

Իմ հարևանուհին, պեպենոտ քթով, կապույտ աչքերով ու մեղրանմանի նման մազմզոտ, շեկլիկ մի աղջիկ է: Նա թարթում է իր այդ կապույտ աչքերն ու լուռ նայում է ինձ, կարծես զարմացել է, որ ես լեզու ունեմ ու խոսել գիտեմ:

— Ինչո՞ւ ես այդպես նայում, ես ասում եմ, որ եթե բոլորիս մատները մեկ-մեկ ծալենք...

— Կեղնի ղոշունի չափ,— կամացուկ շշնջում է նա:

— Ղոշունն ի՞նչ է...

— Թուրքի ղոշուն: Եկավ լցվավ մեր գեղ, տներ վառեց, մարդիկ ջարդեց: Ձեր գեղ ղոշուն չլցվա՞վ:

— Չէ՛, էդ ղոշունից մեր գյուղում չկար...

— Քու հեր-մեր ի՞նչ եղան:

— Չգիտեմ:

— Թուրք չջարդե՞ց:

— Չգիտեմ:

— Ուրեմն քու հեր-մեր սաղ են, երնե՛կ քըզի...

— Բա որտե՞ղ են, որ սաղ են:

— Ես ինչպե՞ս ասեմ: Մի տեղ չէ, մի տեղ կեղնին, վերջ կիգան քըզի կգտնին, երնե՛կ քըզի...— Նրա քթի վրա խտանում են պեպենները, նա ուզում է լաց լինել,— դու որբանոցեն կերթաս, ես կմնամ, երնե՛կ քըզի...

Ես խղճում եմ նրան ու խոստանում, որ եթե գնամ, իրեն էլ հետս կտանեմ:

— Երդո՛ւմ կեր, երդո՛ւմ կեր, որ չես խաբի,— ուրախանում է նա:

— Երդումն ինչպե՞ս են ուտում:

— Ասա՝ է՛ն խաչ վկա:

— Վկա՛ էն խաչը:

— Ասա՝ վկա՛ սուրբ Կարապետ:

— Վկա՛ սուրբ Կարապետն էլ...

— Ասա՝ վկա՛ իմ հոր, իմ մոր գերեզ... վա՜յ չէ, քու հեր-մեր սաղ են...

— Դե լավ, թող սաղ լինեն, ուզում ես, ուրիշ երդում ուտեմ:

# Ա Մ Ա Ռ

*ԼԻԴԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

Մորին ցողաշաղախ
Այն ո՞ւմ աչքով արեց,
Եվ ճնճղուկը ուրախ
Թևը թափահարեց:

Արտը երգեց օրոր,
Դեղին շորեր հագին,
Լորը կանչեց մոլոր
Կորած փոքրիկ ձագին:

Խաղաղվեցին հոգնած
Խենթ առվակ ու առու,
Զյունը փախավ լեռան
Կատարները հեռու:

Ու խայտացին կրկին
Սարում ողեր ու գառ...
— Ողջո՜ւյն, բերքի, երգի
Արևաշա՜տ ամառ...

---

— Չէ՛, էլ բոլ է, կհավատամ, դու լավ աղջիկ ես, քըգի տանին, ես կիգամ քու հետ, ես կեղնիմ քու ջոջ քույր Արուս:

— Ես ջոջ քույր Արուս չունեմ...

— Արուս ե՞ս եմ, ես ջոջ եմ, դու պստիկ ես, քըգի ախպեր կա՞:

— Չկա:

— Ընձիկ ախպեր կար, իմ ախպեր տղա էր, թուրքեր սպանեցին: Ախպեր ուրիշ բան է, ախպեր եղնի, քըգի ուրիշներ չեն ծեծե: Ախր ախպեր տղա է, մենք աղջիկ ենք...

— Որ աղջիկ ենք, գնանք ջո՞ւրն ընկնենք:

— Չէ՛, ջուր չընկնինք... Արի՛ բան ասեմ:— Նա ավելի է սեղմվում ինձ ու մազոտ մռութը մոտեցնում է իմ ականջին.— Արի՛ էս տղեկներեն մըգի ախպեր բռնենք:

— Ախպերն ինչպե՞ս են բռնում:

— Նա իր մատ կկտրե, ես իմ մատ կկտրեմ, արյուն կխառնենք իրար, կեղնինք քույր-ախպեր:

— Ուրիշի տղան ինչո՞ւ պիտի քեզ համար իր մատը կտրի:

— Այ, էն ջոջ գլխով տղեն կտեսնի՞ս, էն թուխ տղեն: Անուն Վարո է, իմ ախպոր անունն էր...

— Վարոն, տե՛ս, ինչքա՜ն սև է, համ էլ գլուխը... չէ՞, մի փութ գլխով ախպերն ինչի՞դ է պետք,— ասում եմ ես:

— Գլուխ ի՞նչ կանես, է՜,— սրտնեղում է Արուսը,— թող իմ ախպեր դառնա, թող գլուխ ջոջ եղնի:

— Դե լավ, եթե այդքան շատ ես ուզում, հետը խոսենք:

— Չէ՛, դեռ չխոսենք, քըգի լէ ախպեր ջոկենք, հետո:— Նա իր կապույտ աչքերը խլվլացնում է երեխաների բազմության վրա և նորից մռութը մոտեցնում ինձ:— Գտա, էն տղեն, Վարոյի կողքի տղեն, լավ տղա է, անուն Մուշո է:

— Դու այդ ե՞րբ ես բոլոր տղաների անունն իմացել...

— Նավթլուղ եկանք, էն վախտ իմացա: Նավթլուղ լէ Թիլվիս քաղաքն է, չէ՞:

— Նավթլուղը Նավթլուղ է, Թիֆլիսն էլ... չէ՛, ուրիշ քաղաք է:

— Էս տանն էլ Ներսեսի տուն կասեն, գիտե՞ս,— հանկարծ ինչ-որ հիշելով, հայտարարում է Արուսը:

— Ներսեսի՞...— Ես լրջորեն ափսոսում եմ, որ սա թագավորի պալատ չէ, այլ ինչ-որ Ներսեսի տուն:

— Դու ճշմարիտ կասես, գիտես,— ոգևորվում է Արուսը,— իմ մտքով չանցավ, որ Ներսես թագավո՞ր է, թագավոր չեղնի, էսքան ջոջ տուն ի՞նչ կանե: Ճշմարիտ կասես, թագավոր է ու շա՜տ-շա՜տ հաց ունի...

— Եթե թագավոր է, չիր ու չամիչ էլ կունենա,— ես էլ եմ ոգևորվում:

— Չիր ու չամիչ ի՞նչ կանեմ, է՜,— սրտնեղում է Արուսը,— հաց եղներ... ա՜խ, աստվա՜ծ ջան, աստվա՜ծ, մե՜ փշուր հաց ճամփա... ամեն մեկիս՝ մե՜ փշուր, աստվա՜ծ ջան...

Արուսն աղաչում է այնպիսի եռանդով, որ աստված լսում է նրա աղաչանքը, հարգում է, և ներքին դռներից մեկը բացվելով, երևում է օրիորդ Սաթենիկը:

Նա մենակ չէ, հետը երկու ուրիշն էլ կան, որ հավանաբար նույնպես օրիորդներ են, քանի որ նրանք էլ սպիտակ շորերով են, միայն մի քիչ խոշոր են օրիորդ Սաթենիկից:

Այդ երկուսը բռնած բերում են մի մեծ ու լայն տախտակ, վրան էլ սպիտակ սավանով ծածկված



# ՀԱՏԻԿԻ ԵՐԱԶԸ

ՑԵՆՅԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Քնած էր ցորնի հատիկը հողում,
Ձյան վերմակի տակ քնած էր անուշ:
Աստղիկներն էին երկնքում շողում,
Երազ էր տեսնում ցորնիկը մանուկ:

Տեսնում էր իրեն արդեն հասկ դարձած,
Տեսնում էր ոսկի օրերը ամռան,
Աղմուկ էր լսում, լսում երգ ու կանչ
Կոմբայնով իբրև հնձում են նրան:

Հնձում են, հետո փռում արևին,
Ավտոյին բարձած ջրաղաց տանում.
Ու մեկ էլ տեսար՝ ցորնիկը դեղին
Սպիտակ, փափուկ ալյուր է դառնում:

Լցվում է պարկը ու գալիս է տուն,
Խմոր է հունցում տատիկն անդադար,
Խմորը տաք-տաք թոնիրը մտնում,
Գաթա է դառնում Վաչիկի համար:

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

---

ինչ-որ բան: Դեռ ոչ ոք չգիտե, թե այդ ինչ է, իսկ Արուսն արդեն տնկել է իր պեպենոտ քիթը: Նա մի երկու անգամ հոտոտում է օդն ու տագնապով հնում.

— Հա՜ց...

— Ի՜նչ հաց, է՜,— դժգոհում եմ ես,— մեռել կլինի...

— Է՜ն խաչ, հա՜ց է:— Արուսը բարձրանում է թաթերի վրա և լռությունից վախեցած ծղրտում.— Հա-ա՜ց...

— Հա՜ց...

— Հա՜ց...

— Հա-ա՜-ա՜ց...

Երկյուղալի, խելագար, տագնապած մի ոռնոց է բռնել սրահը, ինչ-որ բան է քջքջում, գալարվում, պլեկոծվում, ու դա մեր բազմությունն է հազար գլխանի, հազար աչքանի և հազարբերան, ճիրաններր պարզած սողում է առաջ:

— Հանգի՛ստ,— զարմանալի բաջությամբ և անսովոր ուժով հրամայում է օրիորդ Սաթենիկը:— Նստեցեք հանգի՛ստ, եթե ոչ, հացը չեմ բաժանի:

Մենք սսկվում ենք: Նա հանդիսավոր կերպով եռ է գցում սավանը և տախտակի վրայից մեկ-մեկ վերցնելով լուցկու տուփի չափ, սև ու տարօրինակ ինչ-որ խորանարդներ, տալիս է մեզ: Մենք միմյանց ենք նայում, նայում ենք այդ խորանարդներին ու չգիտենք ինչպես վարվել: Ու դարձյալ Արուսն է, որ երկու կտոր է անում իր խորանարդը, իրար ետևից խցկում է բերանը և կապույտ աչքերը շողացնելով, կուլ տալիս:

— Աղջի՛, հա՜ց էր,— երջանիկ հայտարարում է նա,— է՜ն խաչ, հա՜ց էր...

Մի վայրկյանում մեր բազմությունը դառնում է մի վիթխարի որոճացող բերան՝ մենք ոչնչացնում ենք հաց կոչված այդ սևությունը: Դրա հետ ոչընչանում է նաև լռությունը, կրկնապատկված քաղցը մեզ ոտքի է հանում, մենք արդեն պատրաստ ենք խժռելու այն ամենը, ինչը հեռավոր նմանություն ունի հացի հետ...

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՈՒ ԴԱՐԵՐԻ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ



Բանավանը լեռնային կածանի վերջին ոլորանում է: Առաջին հայացքից ոչնչով աչքի չի ընկնում: Բոլոր բանավանների նման, այստեղ էլ, երբ լույսը բացվում է, մեծերը գնում են աշխատու.ըքի, իսկ երեխաները՝ դպրոց ու մանկապարտեզ: Սակայն բանավանր դպրոցը ունի երկու սովորական, անշուք սենյակ, որին կնախանձեն աշխարհի ամենաիսկական թանգարանները: Այդ սենյակներում, ինչպես աշխարհի ամենաիսկական թանգարաններում, կողք-կողքի դրված են չորս հազար տարվա սափորներ, դամբարաններից պեղված գանգեր, կանացի զարդեր ու ռազմական հանդերձանք: Ցուցադրվող նյութերի մեջ այնպիսի նմուշներ կան, որ աշխարհում պահպանվել են միայն այստեղ: Ու այդ բոլորը պատկանում են բանավանի աշակերտներին: Իհարկե, տարիներ առաջ նրանք երազել անգամ չէին կարող նման հարստության մասին: Նրանք դուրս էին եկել տուրիստական արշավի ու, քանի որ շատ ուշ էր, ստիպված էին եղել գիշերել դրսում: Երբ Դիլիջանի անտառի ամենախիտ թավուտում վրաններ խփեցին, աշխարհագրության ուսուցիչ ընկեր Հարությունյանը, որ նաև տուրիստական խմբակի ղեկավարն էր, կարգադրեց խարույկի համար փայտ հավաքել: Երեխաները ցրվեցին անտառում ու հանկարծ Օֆիկը հողից դուրս ցցված մի արմատ տեսավ: «Լավ կվառվի»,— մտածեց աղջիկն ու սկսեց դուրս քաշել: Նրան օգնության հասան ընկերները: Քիչ անց, երբ արմատը տարան խարույկի մոտ, պարզվեց, որ նախնադարյան գազանի եղջյուր է: Այդ գիշեր վրանների մեջ պառկած, երեխաները նայում էին աստղազարդ երկնքին ու մտածում այն հի՜ն, հի՜ն ժամանակների մասին, երբ այդ հսկա գազանը փնչալով շրջել է անտառում, արմատախիլ է արել հաստաբուն ծառերն ու սարսափեցրել նետ-աղեղով որսի ելած մարդկանց: Այդ գիշեր դպրոցական տուրիստներից ոչ մեկը երկար չկարողացավ քնել, իսկ առավոտյան, երբ վեր կացան, որոշեցին ուսումնասիրել իրենց շրջանի պատմությունը, հուշարձաններն ու ձեռք բերած նյութերով թանգարան կազմակերպել: Դա շատ համարձակ ու մի քիչ էլ ռոմանտիկ ծրագիր էր, բայց ընկեր Հարությունյանը թև տվեց երեխաների երազանքներին: Նա նույնիսկ ուրախացավ, որ տուրիստական արշավների



# ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՆՈՐ ՊԱԼԱՏԸ

Վարպետ շինարարները քարը քարին էին դնում, բարձրացնում պատերը, իսկ մայրաքաղաքի 26 Կոմիսարների շրջանի դպրոցականները շաղախ էին պատրաստում, մեքենաներ բեռնաթափում, այլևայլ աշխատանքներ կատարում, որպեսզի հնարավորին չափ շուտ կառուցվեր իրենց պալատը: Վերջապես եկավ սպասված հանդիսավոր պահը: Երբ ՀԼԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ա. Ե. Քոչինյանը կտրեց բացման ժապավենը, շինարարներին օգնող պիոներները հյուրերին խառնված ներս մտան, հրճվելով ընդարձակ ծաղկանոցով, լողավազանով, մարզական երկու սրահներով, մեծ դահլիճով:

Գեղեցիկ ու նորաձև էր դահլիճը, սակայն նորից

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

ժամանակ. նրանք որոշել են ո՛չ միայն զվարճանալ, այլև հնագիտական ու պատմական արժեքավոր նյութեր հավաքել: Իսկ Լոռին շատ էր հարուստ այդպիսի նյութերով: Գյուղացիները նոր տան հիմք էին փորում, տակից դամբարան էր դուրս գալիս, ջրի ճամփա էին բացում՝ բահը դեմ էր առնում գինու կարասի կամ էլ խաչքարի: Հաճախ նրանք էլ էին շփոթվում իրենց հայտնագործությունից ու չէին հասկանում ինչպես վարվել: Իսկ հիմա նրանց օգնելու էին ելել երեխաները: Հենց լսում էին նման դեպքի մասին, իսկույն տեղ էին հասնում ու իսկական հնագետի նման նախ չափում տեղանքը, հետո զգույշ իջնում փոսի մեջ ու խոզանակով մաքրում հողի տակից դուրս եկած գանգերը, կավե ամանները, հին դրամներն ու զարդերը: Սկզբում մեծահասակները քմծիծաղով էին նայում երեխաների չափից դուրս լարված դեմքերին, հուզմունքից դողդողացող մատներին, բայց երբ թանգարանի առաջին ցուցանմուշները տեսան՝ զարմացած մնացին:

Երեխաները ոչ միայն կորստից փրկել էին հնագիտական նյութեր, այլև վերականգնել փշրված մասերը, պարզել շատ հին նշանների իմաստներն ու արտանկարել սափորների գեղեցիկ նախշերը: Այդպես, ինքնամոռաց աշխատանքով տարված, դպրոցականները չնկատեցին էլ, թե ինչպես լեռների մեջ կորած իրենց բանավանը հասան գրոսաշրջիկների առաջին ավտոբուսները: Թանգարանի համբավը արդեն դուրս էր եկել Լոռվա ձորերից: Ի՞նչ անեին իրենք: Նստեին ու նայեի՞ն, թե ինչպես են իրենց աշխատանքով հիանում Միության քառասուն քաղաքներից եկած տուրիստական կենտրոնների ղեկավարնե՞րը, գիտնական Մորուս Հասրաթյանը, գեներալ Ասքանազ Կարապետյանը, բուլղար մանկավարժ Անտոն Վոյկովը, հայ բարեգործական ընդհանուր միության նախագահ Ալեք Մանուկյանը:

Ո՛չ, դպրոցականներին չհանգստացրեց նույնիսկ այն, որ իրենց թանգարանը իր տեսակի մեջ ամենամեծն է Սովետական Միությունում: Նրանք որոշեցին հավաքածուն հարստացնել ազգագրական նյութերով, որպեսզի այցելուները գաղափար կազմեն ոչ միայն շրջանի պատմության, այլև բարքերի, սովորությունների ու կենցաղի մասին: Մանավանդ, որ ազգագրական շատ նյութեր փչանում էին հենց իրենց աչքի առաջ: Գոմի ամենամութ անկյուններն էին շպրտվել արորն ու խնոցին, ճախարակն ու երկանքը: Դպրոցականների նոր հետաքրքրությունը մեծահասակներին էլ ուրախացրեց: Ամեն օր գավազանին հենված բանավան էին գալիս հարևան գյուղերի ծերունի բնակիչներն ու ասում.

---

ինչ-որ բանի պակաս էր զգացվում: Եվ այդ պակասն էլ շուտով լրացվեց:

Մի քանի օր անց №№ 55, 83, 147, 148 և այլ դպրոցների «Հմուտ ձեռքերի», նկարիչների, մոդելագործների խմբակների անդամները իրենց լավագույն աշխատանքները (գեղանկարներ ու խճանկարներ, նավի ու հրթիռակիր տանկի մոդելներ) նվիրեցին պալատին: Եվ դրանցով զարդարվեցին պալատի ճեմասրահն ու դահլիճը:

Բուսաբանական այգու աշխատողները պալատին նվիրեցին տարբեր տեսակի ծաղիկներ, հազվադեպ հանդիպող ծառեր ու թփեր: Կենդանաբանական այգու աշխատակիցներից նվեր ստացան քարայծի ու սկյուռիկների խնամքով պատրաստված խրտվիլակներ:

Այժմ մուտքի մոտ, ժայռաբեկորին թառած է քարայծը, որ նայողին թվում է, թե ուր որ է կցատկի: Իսկ ապակով շրջափակված ծառաբնի վրա սկյուռիկները կարծես «քարացել» են մի շատ զվարճալի խաղի ժամանակ:

Պալատի գլխավոր ճարտարապետ Ստեփան Քյուրքչյանն ու ճարտարապետ Յուրի Առաքելյանը մի հաճելի փոփոխություն են կատարել նախագծում: Եթե Շահումյան և Լենինյան շրջանների պալատներում աստղադիտարանները շենքի ներսում են և տիեզերքի վերաբերյալ հնարավոր է միայն դասախոսություններ լսել ու կինոնկարներ դիտել, ապա նորակառույց պալատի աստղադիտարանը կից է շենքին: Տասնյոթ մետր բարձրություն ունեցող աստղադիտարանի ներքևի մասը կինոնկարներ դիտելու համար է, իսկ վերևինը՝ իսկական աստղադիտարան:

Ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը խոստացել է հեռադիտակ նվիրել պալատին, որով դպրոցականները (մութն ընկնելուց հետո) կկարողանան հետևել մոլորակների, աստղերի ու համաստեղությունների շարժմանը:

Պալատում կգործեն ոչ միայն աստղագիտական, այլև երգի, պարի, կարուձևի, ռադիոտեխնիկայի, մոդելագործների, մարզական և այլ, շուրջ հարյուր հիսուն խմբակներ:

— Բալա՛ ջան, էս իմ պապերի երկու հարյուր տարվա շվին է, էլ ուժ չունեմ նվագելու, բերել եմ ձեզ:

— Աղջի՛կ ջան, էս իմ հարսանեկան արծաթ գոտին է, էն ժամանակ իր քաշով ոսկի էին տալիս, վերցրե՛ք թանգարանում կախեք:

— Երեխանե՛ր, էս մեր տան յոթ հարյուր տարվա սուրբ գիրքըն ա, դրե՛ք թանգարանում, որ մեր տնից էլ մի հիշատակ լինի:

Այնուհետև դպրոցականների մոտ եկան հին հեղափոխականներն ու խնդրեցին, որ իրենց գործունեությանն էլ տեղ հատկացվի: Ինչպե՞ս մերժեին: Այդպես թանգարանում ստեղծվեց երրորդ՝ հեղափոխության բաժինը: Այն կազմելու ժամանակ խմբակի անդամները Լոռվա հեղափոխականների անցյալից այնպիսի փաստեր ու մանրամասնություններ պարզեցին, որ մինչ այդ հայտնի չէր անգամ մասնագետներին:

Մինչև հիմա էլ, չնայած թանգարանն արդեն լեփ-լեցուն է ցուցանմուշներով, դպրոցականներն ամեն օր տարբեր փաստաթղթեր, զարդեր, իրեր են ստանում: Պատահում է հեռու-հեռվից բանավան է իջնում հողոտ շորերով մի գյուղացի ու ասում.

— Երեխե՛ք ջան, արտը փորելիս, բահը սալի է դեմ առել: Հենց ապրեք, մի եկեք տեսեք ինչ է:

Եթե դասերը դեռ չեն վերջացել, գնում է գյուղացին ու սպասում այնքան, մինչև երեխաները գան, ամեն բան ստուգեն ու պարզեն: Հիմա Թումանյան բանավանի միջնակարգ դպրոցի տուրիստական խմբակի անդամների հետ հաշվի են նստում ոչ միայն իրենց շրջանում: Հայ պատանիներին հրավիրել են հանրապետության բոլոր քաղաքներից, Մոսկվայից, Կիևից, Բուլղարիայից, որտեղ նրանք պատմել են իրենց թանգարանի ստեղծման, տարվող աշխատանքների ու տարիների ընթացքում կուտակված փորձի մասին: Թումանյան բանավանի դպրոցական թանգարանի առավել հետաքրքիր նյութերը երկար ժամանակ ցուցադրվել են Երևանի Շահումյանի շրջանի պիոներների պալատում, Մոսկվայի ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում: Սակայն աշխարհագրության ուսուցիչ Հարությունյան Վարդանի համար, որն ստեղծման օրից ղեկավարում է տուրիստական խմբակն ու թանգարանի աշխատանքները, երեխաների արածը միայն ցուցադրական նշանակություն չունի: Ընկեր Հարությունյանը տասը տարի է, դասերից հետո, իր ամբողջ ժամանակը նվիրում է թանգարանին, որպեսզի աշակերտները ցուցադրվող նյութերի միջոցով հարստացնեն դպրոցում ստացած իրենց գիտելիքները, պատմության ու աշխարհագրության հետ կապված շատ ու շատ հարցեր ավելի պարզ ու որոշակի պատկերացնեն: Հենց վերջերս էր, որ չորրորդ դասարանցի Սամվելը ուսուցչուհուն հարցրեց, թե ինչպես է աշխատել խոփի շարժիչը, երբ հին ժամանակ բենզին չի եղել: Ուսուցիչը ոչինչ չասաց ու խնդրեց, որ դասընկերները պատասխանեն Սամվելին:

Սակայն բոլորն էլ լուռ էին: Խոփի աշխատանքը ոչ ոք չէր պատկերացնում: Այդ ժամանակ ընկեր Հարությունյանը, որ նաև թանգարանի էքսկուրսավարն է, երեխաներին հրավիրեց թանգարան ու սրահի կենտրոնում դրված գութանը ցույց տալով, բացատրեց, թե ինչպես են եզները լծել այս գութանին ու հող վարել, հետո ինչպես են հողը տափանել ու ցանել, ապա կալսել, ուրիշ ինչ գործիքներ ու կենցաղային իրեր են օգտագործել մեր պապերն ու տատերը: Չորրորդ դասարանցիները լսում էին զարմանքից աչքերը լայն բացած ու այդ օրը իրենց շրջանի մասին հետաքրքիր շա՜տ, շա՜տ բան իմացան: Դրա համար զարմանալի չէ, որ Թումանյան բանավանի միջնակարգ դպրոցի աշակերտները առանձնապես սիրում են պատմություն ու աշխարհագրություն, և ավարտելուց հետո ձգտում են ուսումը շարունակել մանավանդ այդ մասնագիտությունների գծով:

Այս տարի նորից կհավաքվեն տուրիստական խմբակի սաները: Բոլորը: Նրանք ովքեր Դիլիջանի անտառում գտան ծառարմատ հիշեցնող հսկա եղջյուրը, նրանք, ովքեր գետնի տակից տան մեծության կճուճներ հանեցին ու վերծանեցին չորս հազար տարվա տարօրինակ նշանները:

Նրանք կհավաքվեն, որպեսզի հիշեն ամեն մի ցուցանմուշի հետ կապված հետաքրքիր, տխուր ու զվարճալի դեպքեր և միասին նշեն իրենց թանգարանի առաջին տասնամյակը: Առաջին տասնամյակը, որովհետև տուրիստական խմբակի անդամները վստահ են, որ դեռ շա՜տ ու շատ տասնամյակներ կգործի թանգարանը, որպեսզի տեղացի ու օտար այցելուներին պատմի մեր ժողովրդի դարավոր քաղաքակրթության, յուրօրինակ կենցաղի ու հերոսական անցյալի մասին: Ինչպես նաև նրանց մասին, ովքեր սիրով ու հոգատարությամբ հավաքեցին այդ բոլորը, ի մի բերեցին ու հանձնեցին դարերին:





ՎԱՉԳԵՆ ՕՎՅԱՆ

# ԱՌԱԿՆԵՐ



## ԱՀԸ

Երկնքում ամպերը դղրդացին։

— Առյուծն է մռնչում,— երկյուղից դողաց եղնիկը։

— Սխալվում ես,— պատասխանեց քարայծը,— դա գայլի մռնչոցն է։

— Ո՛չ առյուծն է, ո՛չ գայլը,— կրթկրթաց հավը,— այդպես միայն աղվեսը կարող է մռնչալ։

Այդ պահին մկնիկը գլուխը հանեց բնից ու ծվծվաց.

— Հիմարնե՜ր, ի՞նչ եք կանգնել, փախե՜ք, այդ կատո՛ւն է գալիս։

## ՄՆԱՊԱՐԾ ՄՈՒԿԸ

Քանի նկուղը կատու չէր մտնում, ծեր մուկը սկսեց պարծենալ մկների առաջ.

— Ես մի անգամ մի կատու եմ կերել։

Մկները հավատացին և ծեր մուկն ավելի փքվեց.

— Չեմ կերել, ուղղակի կուլ եմ տվել։ Ես հիմա կարող եմ միանգամից երկու կատու կուլ տալ։

Հաջորդ օրը նկուղում երևաց կատվի մի ձագ և լեղապատառ մկները վազեցին ծեր մկան մոտ։

— Հասի՜ր, պա՛պ,— ասացին,— ահա կատուն եկել է։

Ծեր մուկը գլուխը հանեց անցքից ու նորից ետ քաշեց.

— Հաճույքով կուլ կտայի այդ անպիտանին, բայց մեղք է, թող մեծանա։

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ





# ՍՈԽԱԿՆԵՐԸ

ԱԼԵՍ ՍՏԱՎԵՐ
(Բելոռուս բանաստեղծ)

— Տեսե՛ք, մի տեսե՛ք,
Ի՛նչ եմ տալիս ձեզ,—
Ասում է Մաթոս
Պապը ժպտերես:
Ու գրպաններից
Սուլիչներ հանում,
Մանուկներին է
Մեկ-մեկ բաժանում:
...Դեղնած տերևները
Ընկնում են հողմից,
Բայց սոխակներն են
Երգում չորս կողմից:
Մարդիկ զարմացած
Հարցնում են իրար.
— Աշնան այս պահին
Սոխակի դայլա՞յլ...
Բայց և բացվում է
Իսկույն գաղտնիքը.
— Այդ նա է արել՝
Մաթոս պապիկը:
Հանգիստ չի նստում
Ծերունին այնվարս,
Կարծես գարուն է
Բաժանում մաս-մաս:

Փոխադրությունը՝
ՎԱՐԴԳԵՍ ԲԱՐԱՅԱՆԻ



# ՏԱՐՕՐԻՆԱԿ ԵՎ ԸՄԲՈՍՏ ԲՈՒՅՍԵՐԸ

Դուք երևի հաճախ ընկատած կլինեք, թե ինչպես որոշ խոշոր ծառատեսակներ երբեմն աճում են այնպիսի վայրերում, որոնք չեն համապատասխանում նրանց կյանքի պահանջմունքներին: Խոշոր կաղնիներ կարելի է տեսնել արևից այրված ժայռերի գագաթին, անդընդախոր կիրճերի վրա կախված, պատի նման հարթ ժայռերի կրծքին և այլն: Գորիսի շրջանի Քարահունջ գյուղում մի հսկայական փռշնի աճել է ուղղակի ժայռերի մեջ, ձուլվել քարերին և նույնիսկ դժվար է նկատել, թե որտեղ է վերջանում արմատը և որտեղ է սկսվում ժայռը: Ղուկասյանի շրջանում, Չիչխան գետի հովտում, ուղղակի անմատչելի ժայռի ծերպին թառել է մի խոշոր ծիրանի ծառ: Իջևանի շրջանի Կոպբիշև գյուղից մի փոքր ներքև կաղնին աճում է ճանապարհի եզրին գտնվող հրաբխային քարակույտերի մեջ, թողած շրջապատի բարեբեր դաշտերը:

Սակայն առավել զարմանալի է, երբ որոշ ծառեր աճում են հնադարյան շինությունների, իսկ ավելի հաճախ՝ վանքերի և եկեղեցիների պատերի, գմբեթի, տանիքի վրա: Հանդուգն ծառերը նոր կառուցված շենքերից էլ չեն «հրաժարվում»: Երևանում, կենտրոնական փակ շուկայի տանիքի վրա մի խոշոր թղկու ծառ է աճում: Ոչ ոք չի հեռացնում այն, չնայած որ մեծանալով, ծառը կարող է զգալի վնաս պատճառել շինությանը: Հայաստանի գիտությունների ակադեմիայի հին շենքի բակում, ուղղակի պատի, ասֆալտի ու քարերի արանքից չինական այլանթի մի խոշոր ծառ է աճել:

Սրանք սովորական երևույթներ են մեր հանրապետության համար:

Ի՞նչն է ստիպում անմահ պայմանների նկատմամբ բավականին պահանջկոտ այս բույսերին բնակություն հաստատելու նման անհարմար, ուղղակի անհեթեթ պայմաններում:

Թռչունները ծառից պոկելով պտուղը, հաճախ գերադասում են այն վայելել անմատչելի ծերպերի վրա, որտեղ նրանց ոչ ոք չի խանգարում: Եվ ահա նախաճաշից հետո բազմաթիվ սերմեր են մնում, որոնցից մեկը կամ մի քանիսը ընկնելով ժայռի ճեղքվածքների մեջ հավաքված հողաշերտերի վրա ծլում են և աճելով ծառ դառնում: Սերմը կարող է ժայռի գագաթը հասնել նաև քամու կամ միջատների միջոցով: Եթե նման միայնակ սերմնաբույսերը քիչ թե շատ սննդարար հողաշերտ են գտնում, ապա կարող են տասնյակ և նույնիսկ հարյուրավոր տարիներ պահպանել իրենց գոյությունը, ծաղկել ու պտղաբերել, քանի որ չնայած այստեղ աճման պայմանները արտակարգ անբարենպաստ են, այնուամենայնիվ ծառը ֆիզիկական ոչնչացման չի դատապարտված: Ո՛չ անասունները, ո՛չ էլ մարդը նրան չեն կարող ոչնչացնել: Մինչդեռ մատղաշ ծիլերի մեծ մասը աճելով անտառից դուրս, դաշտավայրերում ոչնչանում է մարդու, կենդանիների ու զանազան անբարենպաստ պայմանների հետևանքով: Բայց չըպետք է կարծել, որ ծերպերում բնակություն հաստատած բոլոր սերմնաբույսերը ողջ են մնում: Ամենևին էլ ոչ: Նրանց չնչին տոկոսն է միայն պահպանում իր խղճուկ գոյությունը:

Բնության մեջ հաճախ է դիտվում նաև ծառատեսակների մի այլ տարօրինակ վարք, որ հիշեցնում է այն կամակոր տղային, որը ձգտում է ամեն ինչ անել սովորականից, բոլորի կողմից ընդունվածին հակառակ:

Օրինակ, դեռևս մի քանի տասնամյակ առաջ գիտնականները նկատել են, որ եթե մի շարք ծառատեսակներ գերադասում են աճել խմբերով, կազմելով հսկայական անտառներ, ապա ուրիշները նախընտրում են միայնությունը և խուսափում են իրենց եղբայրներից: Արևադարձային երկրներում է աճում կարմիր ծառը (սվիետենիա մահագոնի), որը այնքան է խուսափում իր նմանի հարևանությունից, որ ամենուրեք աճում է միայնակ, շրջապատված միայն ու միայն այլ ծառաթփային բույսերով: Գիտնականներին մինչև այսօր չի հաջողվել մի կարմիր ծառի մոտակայքում նույնանման մի այլ ծառ հայտնաբերել: Այդ տեսակետից ուղղակի «չափազանցություն» է հասնում արգենտինական օմբուն: Այդ ծառատեսակի անհատները մեկը մյուսից այնքան են խուսափում, որ եթե շրջակայքում հայտնաբերվի օմբունի մի ծառ, ապա կարելի է չկասկածել, որ հաջորդ նույնանման ծառը գտնվում է բազմաթիվ կիլոմետրեր հեռու: Հանելուկային պատճառով այդ ծառերը բնության մեջ տեղաբաշխված են մեկը մյուսից մեծ հեռավորության վրա: Դրա հետևանքով խաչաձև փոշոտումը այս բույսերի մոտ բոլորովին բացառվում է. նրանք բազմանում են ինքնափոշոտման միջոցով, իսկ սերմերը հանելուկային ճանապարհներով հայտնաբերվում են մեծ հեռավորության վրա, սկիզբ դնելով օմբուի նոր միայնակ անհատների: Բացի այդ, օմբուն խորհրդավոր ծառ է. դեռ ոչ ոք չի տեսել, որ այդ ծառը չորանա: Ծառերի մոտ այնպիսի կարծիք է առաջացել, որ ընդհանրապես օմբուն չի մահանում:

Որոշ բույսեր աճում են այն-

պիսի անբարենպաստ պայմաններում, որտեղ այլ բույսեր իրենց գոյությունը պահպանել չեն կարող: Ամերիկայի Միացյալ Նահանգների հարավարևմտյան մասում է աճում խոշոր արմավաշուշանը (Յուկկա բրևիֆոլիա): Այդ բույսը իր կյանքը անց է կացնում անապատային շրջաններում, որտեղ պարզ, անամպ երկնքից անգթորեն այրում է հրաշեկ արևը, իսկ տարվա ընթացքում մթնոլորտային տեղումներ համարյա թե չեն լինում: Բույսը սովորաբար ծածկված է հաստ «թիկնոցով», որը նրան պաշտպանում է արեգակի կիզիչ ճառագայթներից: Ո՛չ անտառներում, ո՛չ ծովափին, ո՛չ տափաստաններում և ո՛չ էլ մեղմ կլիմա ունեցող այլ վայրերում այդ արմավաշուշանը չի կարող աճել: Նա գոհ է իր ճակատագրից միայն իր հայրենիքի դժոխային պայմաններում:

Մի շարք արևադարձային բույսեր տարօրինակ օտարասիրություն են հանդես բերում անման պայմանների նկատմամբ: Հաբեշական սուրճի ծառը (կոֆե արաբիկա) տանել չի կարող իր հայրենիքի դրախտային պայմանները, սակայն հրաշալի է աճում օտար՝ Բրազիլիայի արևից այրված լեռնալանջերում, փարթամորեն տերևակալելով և առատորեն պտղաբերելով: Դրան հակառակ, արևադարձային Բրազիլիայից ծագող շոկոլադի ծառը իրեն ավելի լավ է զգում Հասարակածային Աֆրիկայում, չցուցաբերելով հայրենիք վերադառնալու ոչ մի ցանկություն: Մի ուրիշ «բրազիլիացի»՝ կեշյու ընկուզենին գերադասում է Հընդկաստանի արգավանդ դաշտերը և երկրագնդի վրա հռչակ է ձեռք բերել որպես «հնդկական ընկուզենի»: Ավելի շատ կաուչուկ է ստացվում Մալայայի պլանտացիաներից, չնայած կաուչուկատու հևեյան նույնպես «բրազիլիացի» է: Դժվար է բացատրել բույսերի նման տարօրինակ վարքը, անհարկի ըմբոստացումը իր հայրենիքի բնական պայմանների նկատմամբ:

Կենտրոնական Աֆրիկայում աճում են բրախիսթեգիա ծառի 20 այլատեսակներ: Դրանցից 19-ը հսկայական ծառեր են, անտառի իսկական նահապետներ, որոնք պատկառանք են հարուցում իրենց հզոր սաղարթով, խոշոր բնով և հաստ ճյուղերով: Սակայն 20-րդը, որը կոչվում է բրախիսթեգիա ռուսկլիե, իր եղբայրներից շատ է տարբերվում: Չնայած իրականում այն ծառ է, այնուամենայնիվ ունի ընդամենը... 15 սմ բարձրություն:

Կենտրոնական Աֆրիկայում աճող Գարցինիա Լիվինգստոնի կոչվող պտղատու բույսը շատ հաճախ տալիս է հազարավոր ուղղաձիգ ընձյուղներ, որի շնորհիվ նրա երկար, հորիզոնական ճյուղերը ծածկվում են դեպի վեր ձգվող ցողունների իսկական անտառով: Ինչի՞ հետևանք է անհագ մայրության այս դրսևորումը: Դա նույնպես դեռևս անհայտ է գիտությանը:

Հարավային Ռոդեզիայում աճում է ակացիա ալբիդա արևադարձային բույսը: Տարվա չոր, շոգ շրջանում, երբ մնացած բոլոր բույսերի տերևները թափվում են՝ ջրի ծախսը հնարավորին չափ կրճատելու նպատակով, այս ծառը ընդհակառակը, ծածկվում է թավիշ տերևներով: Երբ սկսվում է անձրևային շրջանը և այլ ծառատեսակները սկսում են տերևներ արձակել, այս տարօրինակ բույսը մերկանում է տերևներից և այս վիճակում անց կացնում բոլոր բույսերի համար բաղձալի անձրևային, խոնավ շրջանը: Պերու և Չիլի այցելող ճանապարհորդների վրա հսկայական տպավորություն է թողնում անուշահոտ պլյումերիան, որի գեղեցիկ ծաղիկներից տեղացիները սիրում են ծաղկեշղթաներ պատրաստել: Պատմում են, որ այս ծառից վերցված կտրոնները 2—3 տարի կարող են արևի տակ, բաց օդում մնալ առանց տնկելու, չչորանալ և հեշտությամբ արմատակալել, երբ այդքան երկար պահելուց հետո տնկում են խոնավությամբ ապահովված հողերում: Սա բույսի արտակարգ կենսունակության նշան է:

Մի քանի ծառատեսակներ ծարավի են բազմանալու անհավատալի չափերով. Մալայայում հանդիպող կիսաթփային վորման և ադինանդրան ամբողջ սեզոնի ընթացքում ամեն օր առաջացնում են նոր տերևներ, ծաղիկներ ու պտուղներ: Դրա փոխարեն Գվատեմալայում աճող ֆիլլոկարպուսը պտղաբերում է 50 տարին մեկ անգամ: Բրազիլիական հիմենոլոբիում ծառը պտղաբերում է 15 տարին մեկ, իսկ որպեսզի ծաղկի մալայական խոշորածաղիկ հոմալիումը, անհրաժեշտ է սպասել առնվազն 20 տարի:

Մալակկայի ցածրավայրերում հանդիպող մշտադալար «Փառքի ծառը» (արթոկարպուս անիզոֆիլլա) տալիս է հազվագյուտ ձևի տերևներ: Պատկերացրեք մարդու ձեռք, որի վրա մատներից մեկը երկար է, հաջորդը՝ կարճ, երրորդը դարձյալ երկար և այսպես հաջորդաբար: Նման կառուցվածք ունի «Փառքի ծառի» տերևը: Մեկ մետրից ավելի երկարություն ունեցող այդ տերևի գլխավոր ջիղի երկարությամբ դասավորված են ավելի քան 12 զույգ տերևիկներ, որոնցից առաջին զույգը կարճ է, մոտ 5 սմ երկարությամբ, հաջորդ զույգը հասնում է մինչև 15 սմ երկարության, մյուս զույգը դարձյալ կարճ է և այսպես հաջորդաբար: Երկրագնդի վրա ոչ մի այլ բույս տերևի այդպիսի անհեթեթ կառուցվածք չունի:

Ինչո՞ւ են այս բույսերը շեղվել բնության ընդհանուր օրինաչափություններից և ձեռք բերել նման տարօրինակ հատկություններ: Գիտնականները այդ հարցին առայժմ պատասխանել չեն կարող:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Կենսաբանական գիտությունների դոկտոր*

# ԻՆՉՊԵՍ ԵՆ ԱՌԱՋԱՑԵԼ ԱՅՍ ՁԿՆԵՐԻ ԱՆՈՒ՜ՆՆԵՐԸ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*



*Կարմրախայտ*



*Գեղարքունի*



*Թեփուկ*

ԲԵՂԼՈՒ—Այսինքն՝ բեղավոր, խոշոր բեղեր ունեցող ձուկ։ Իրոք, աչքի ընկնող բեղեր ունի։ Մի տեսակը, որ կոչվում է **Քռի բեղլու**, տարածված է Հայաստանի բոլոր գետերում, բացի Մեծամորից։ Մյուս տեսակը՝ **Սևանի բեղլուն**՝ ապրում է միայն Սևանա լճում և նրա մեջ թափվող ջրերում։

ԿԱՊՏԱՁՈՒԿ — Ապրում է Հայաստանի գետերում (բացի Մեծամորից)։ Համարվում է կողակի մի ցեղը, բայց իր հիանալի համով շատ է տարբեր նրանից։ Եփելուց հետո գույնը դրսից կապտա-մանուշակագույն երանգ է ստանում, երևի դրանից էլ՝ իր **կապիտ** (կապույտ) անունը։

ՄՈՒՐԾԱ (մուրծի, մուրզա)— Ապրում է Հրազդան, Աղստև, Արփա և այլ գետերում։ Նման է բեղլուին, բայց դունչը բավական երկար է։ Հին երևանցիները այդ ձկնատեսակին ասում էին նաև **դուդա**, որ արարատյան բարբառում դունչ, ծնոտ կնշանակի։ Ուրեմն՝ դնչավոր, երկարադունչ։

ԻՇԽԱՆ — Սրա ծագումը բոլորից լավ բացատրել է Պերճ Պռոշյանը. «Սևանա բոլոր ձկների իշխանն է նա»,— բացականչում է գրողը՝ այդ ձկան տեսքից հիացած։

ԳԵՂԱՐՔՈՒՆԻ — Իմ կարծիքով դա կնշանակե գեղանի պալատական։ Իրոք իր հրապուրիչ արտաքինով, իր գեղանի լողով և աննման համով նա արժանի է արքունական անվան։ Նույնիսկ Ավստրալիայից գեղարքունու ձկնիկներ են խնդրում՝ իրենց մոտ զարգացնելու համար։

ԳՈՃԻ — Մեր հանրապետությունում ապրում է



*Հայկական կարմրակն*



*Գոճի*

միայն Մեծամոր գետում: Բառարաններում սրան **գետածածան** են ասում, իսկ ռուսները՝ **գուստերա**: Գոճի ասում են այդ գետի առափնյա բնակիչները, որովհետև այս ձուկը գոճու նման կարճլիկ, լայն, հաստլիկ, փափլիկ է:

ԾԱՊԱԼ կամ ՓԻՉԽՈՒԼ—Ասում են նաև **ճայկական տառեխիկ**: Փոքրիկ ձուկ է, ամենամեծը՝ մի մատնաչափ: Ապրում է Հայաստանի գրեթե բոլոր գետերում (բացի Մեծամորից): «Փիչխուլ մարդ է...»— արհամարհանքով ասում է ժողովուրդը փոքրիկ-մոքրիկ մարդուն: Դրանից էլ՝ այդ ձկան անունը: Այսինքն՝ փոքր, «խուրդա-մուրդա», անարժեք ձուկ:

ԿԱՐՄՐԱԽԱՅՏ — Ապրում է լեռնային սառը, թթվածնով հարուստ և արագահոս ջրերում: Կողերը պատած են կարմիր խայտերով (խալերով), որից և նրա կարմրախայտ անունը:

ՀԱՍՏԱՃԱԿԱՏ — Բազմացել է Երևանի Կոմերիտական այգու լճում (նախկին Թոխմախան-գյոլ) և Մեծամորի առափնյա մի լճակում: Խոշոր ձուկ է, մինչև 10—12 կգ քաշով: Ճակատը լայն է, դրանից էլ նրա հաստաճակատ (ռուս. **տոլստոլոբիկ**) անունը:

ՉԱԼԱՁՈՒԿ կամ ԼԵՐԿԱՁՈՒԿ — Հանդիպում է Արաքսի վտակներից մի քանիսում (Քասախ, Ազատ և այլն): Փոքրիկ ձուկ է, լերկ և չալ մարմնով: Դրանից էլ՝ նրա անունը:

ԹԵՓՈՒԿ — Հանդիպում է Արաքս թափվող Արփա, Քասախ, Վեդի և այլ գետերում: Ծածկված է մեծ-մեծ թեփուկներով, երևի դրանից էլ՝ նրա թեփուկ անունը: Խոշոր ձուկ է:

ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱՐՄՐԱԿՆ — Ծածանների ընտանիքին պատկանող փոքր ձուկ է, որ ապրում է Մեծամորում և նրա մերձակա ջրերում (մանավանդ՝ ավազահանքերից առաջացած լճակներում և Արարատյան դաշտի ջրանցքներում): Ամեն կիրակի հարյուրավոր ձկնորսներ զբաղված են այդ ձկնիկի որսով: Լողակները և աչքերը կարմրավուն երանգ ունեն, որից էլ առաջացել է նրա կարմրակն գրքային անունը, իսկ իրականում նրան կոչում են իր ռուսական անունով՝ **պլոտվա**:


Հայկական տառեխիկ


Բեղլու


Հայկական կապտաձուկ


Մուրձա


Իշխան


Հաստաճակատ


Չալաձուկ




# ՎԵՐԲԵԼԻՆՁԵԻ ԱՓԻՆ

Գերմանական ազատ երիտասարդական միության նախաձեռնությամբ Վերբելինզե լճի ափին կառուցվեց պիոներական միջազգային ճամբար: 1952 թ. հուլիսի 16-ին ճամբարի բացմանը ներկա ԳԴՀ-ի պրեզիդենտ Վիլհելմ Պիկը ասաց. «Այս ճամբարը ձեր հանրապետությունն է, ամբողջովին պատկանում է ձեզ՝ պիոներներին»: Այդ ժամանակվանից հետո, յուրաքանչյուր տարի այստեղ հանգստանալու են գալիս աշխարհի տարբեր երկրների հազարավոր երեխաներ:

Վերբելինզեն մեծ և խաղաղ լիճ է: Ջուրը սառն է ու քաղցրահամ: Նրան շրջապատում են անտառները ու ծաղկաշատ բացատները: Երեկոյան, երբ լճափին վառվում է պիոներական խարույկը, ջոկատավարը պատմում է լճի առաջացման լեգենդը:

— Այսպիսի խարույկ լճի ափին վառվում էր շա՜տ-շատ տարիներ առաջ: Խարույկի մոտ խորհրդի էին նստել Վերբելինզե գյուղի ծերունիները: «Պետք է հեռանալ այստեղից,—ասում էին նրանք:— Այս վայրը անիծված է աստծուց: Մեր գյուղից աղքատ ոչ մի տեղ չկա: Շուտով այստեղից կչքանա նաև ջուրը: Առվակները համարյա չորացել են»: Այդ ժամանակ հայտնվեց երկար, ալիքաձև կապույտ մազերով մի գեղեցիկ կին և ասաց. «Երջանկությունը ձեզ էլ կայցելի»: Առավոտյան մարդիկ տեսան, որ գյուղի մոտ առաջացել է մի մեծ, խոր լիճ և նրա թափանցիկ ջրերում վխտում են շատ ձկներ:

Այս հիանալի լեգենդը ստեղծող ժողովուրդը շատ ծանր ժամանակաշրջան է տեսել՝ ֆաշիզմի տիրապետությունը: Վիլհելմ Պիկի անվան միջազգային ճամբարում հանգստացող երեխաները այցելում են

# ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ՃԱՄԲԱՐԱԿԱՆՆԵՐԻՆ

Պիոներական ճամբարներին հատկացված են հայրենի բնության ամենագեղատեսիլ վայրերը: Դա հնարավորություն է տալիս ճամբարականներին պիոներական կյանքը որքան կարելի է հետաքրքիր, արդյունավետ ու գեղեցիկ դարձնել:

Ասենք թե ջոկատով կամ խմբով արշավի եք գնում, ճանապարհին ձեզ կարող են հանդիպել կոճղեր, ոստեր, ծառերի ճյուղեր և այլ առարկաներ: Մեծ մասամբ, դրանք, այս կամ այն կենդանու կամ առարկայի ձևն ունեն: Եթե չունենան էլ, ապա մի փոքր մշակելուց հետո հրճվանք կպատճառեն ոչ միայն հեղինակին, այլև կողմնակի դիտողին: Այդպիսի առարկաների մոտով անտարբեր մի՛ անցիր: Երբեմն շատ սովորական ժայռաբեկորը օրվա տարբեր ժամերին, տարբեր կողմերից դիտելիս նոր հատկանիշներով է ներկայանում քեզ: Այդ հայտնագործությամբ ինքդ կարող ես երկար հիանալ: Եթե նկարելու շնորհք ունես, ապա բնության գրկում ներշնչանքի ուժը այնքան զորեղ է, որ հաճախ հնարավոր չի լինում այն զսպել:

Պատմում են, որ ռուս մեծ կոմպոզիտոր Չայկովսկին, երբ վերադառնում էր բնության մեջ կատարած շրջագայություններից, երբեմն առանց ընդմիջման ամբողջ օրը ստեղծագործում էր:

Բնությունը միշտ էլ շռայլորեն է պարգևում նրան, ով կարողանում է տեսնել, զգալ նրա հմայքները: Անցյալ տարի Ծաղկաձորի մի քանի ջոկատներ հավաքել էին տարբեր կենդանիներ պատկերող հետաքրքիր կոճղեր ու արմատներ: Սակայն այդ փորձը ոչ միայն չտարածվեց մյուս ջոկատներում, այլև այդ հավաքած նյութերն էլ, անփույթ վերաբերմունքի պատճառով, լրիվ անհետացան: Ուրեմն միայն նկատելն ու գնահատելը բավական չէ:

Հաճելի հանգիստ կարելի է համարել դեղաբույսեր հավաքելը, սողուններից, միջատներից, թիթեռներից հավաքածուներ կազմելը: Դեղաբույսեր հավաքողը, եթե չգիտե դրանց անունները, կարող է շուտ հիասթափվել այդ զբաղմունքից: Իսկ երբ ճանաչում ես և անուններն էլ գիտես, քեզ այդ աշխատանքը մեծ բավականություն կպատճառի: Նույնը կարելի է ասել սողուններից, միջատներից ու թիթեռներից հավաքածուներ կազմողների մասին: Սողուններով, հատկապես օձերով, հետաքրքրվողները պետք է լավ տարբերեն վտանգավոր և անվտանգ օձերին: «Պիո-

այժմ թանգարան դարձած համակենտրոնացման ճամբարները, նայում սարսափելի գազախցիկներն ու տանջարանները, որտեղ զոհվել են ֆաշիզմի դեմ պայքարող տարբեր ազգությունների միլիոնավոր մարդիկ: Բացատներից մեկում կանգնած է սովետական «Տ—34» տանկը, որն առաջինն է մտել Բեռլին, որպեսզի գերմանացի և մյուս ժողովուրդներին ազատի ֆաշիզմի լծից, որպեսզի աշխարհում լինի խաղաղություն:

Արշավներից բացի, ճամբարում հաճախ կազմակերպվում են սպորտային մրցություններ: Գործում են բազմաթիվ խմբակներ: Ամենամեծ միջոցառումներից մեկը ազգային տոնահանդեսն է, երբ երեխաները երգում են ու պարում, բանաստեղծություններ արտասանում ու խաղում: Ճամբարում կա վիետնամական շուկա: Երեխաները հուշանվերներ են պատրաստում ու վաճառում, և ստացված գումարը ուղարկում վիետնամցի իրենց հասակակիցներին:

Երեխաները այնքան են իրար մտերմանում, որ դժվարությամբ են հրաժեշտ տալիս ճամբարին: Տուն մեկնելուց առաջ նրանք մետաղադրամ են նետում լճի մեջ: Ասում են. «Եթե մետաղադրամը նետես ջրի մեջ՝ նորից կվերադառնաս»:

---

ներ» և «Ծիծեռնակ» ամսագրերում տպագրվել են նյութեր դեղաբույսերի, օձերի, բուսական և կենդանական աշխարհի մասին: Ճամբար մեկնելուց առաջ լավ կլիներ մեկ անգամ էլ վերանայեիք դրանք: Այս կամ այն առարկայի, կենդանու մասին գիտելիքների պակասը կարելի է լրացնել ճամբարի մանկավարժների, ջոկատավարների ու ավագ ընկերների օգնությամբ:

Իհարկե, սրանով չեն սահմանափակվում բնության մեջ գեղագիտական հաճույք պատճառող զբաղմունքները: Կավից կարելի է գեղեցիկ կերպարներ ստեղծել, փայտի վրա փորագրել, նկարել բնության գողտրիկ տեսարաններ: Պարտադիր չէ, ամեն ինչ թողնել ջոկատավարի հայեցողությանը: Նախաձեռնեք ինքներդ, այդ մասին հայտնելով ջոկատավարին կամ մանկավարժին:

Աշխատեք առավել չափով օգտվել բնության պարգևած հնարավորություններից, ճամբարային կյանքը որքան կարելի է հետաքրքիր, բովանդակալից ու գեղեցիկ դարձրեք սեփական նախաձեռնություններով: Եվ ճամբարից վերադառնալուց հետո ձեր հուշերն ու տպավորությունները գրեցեք, ուղարկեցեք «Պիոների» խմբագրությանը: Եթե դրանք լինեն հետաքրքիր ու բովանդակալից, կտպագրենք ամսագրի էջերում:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ОРГАН ЦК ЛКСМ АРМЕНИИ И РЕСПУБЛИКАНСКОГО СОВЕТА ПИОНЕРСКОЙ ОРГАНИЗАЦИИ ИМ. В. И. ЛЕНИНА


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԷԴՈՒԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

---


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 09034: Պատվեր՝ 652: Տպաքանակ՝ 80000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5 VII 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդադյարոփ անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:




ԳԻՆԸ՝ 10Կ.                                                                                ԻՆԴԵՔՍ՝ 77806



# ԵՐԱՆԻ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Պարապ-սարապ
Ման է գալիս,
Երանի է
Մարդկանց տալիս:
— Քեզ երանի՜,
Լողո՛րդ Վահան,
Քեզ երանի՜,
Պարո՛ղ Վահրամ:
Երանի՜ ձեզ,
Պայծա՛ռ, Պարգի՛կ,
Որ դարձել եք
Հմուտ մարզիկ:
Դուք երջանիկ,
Դուք հաջողակ,
Ուզեք՝ վազեք,
Ուզեք՝ խաղաք,

Ուզեք՝ մեկնեք
Ուրիշ քաղաք:
Հանդիպողին՝
«Քեզ երանի»,—
Այս է գործը
Ծույլ Արամի:
Թե որ ինքն էլ
Մի գործ անի,
Ծաղիկ ջրի,
Ծառ պահպանի,
Լողա, վազի,
Իրեն մարզի,
Սրան նրան
Հո չի՛ ասի.
— Քեզ երանի՜,
Քեզ երանի՜...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ